

**ՍՈՒՐԵՆ ԳՈՒՐԳԵՆԻ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**

**ՀԿԿ կենտկոմի առաջին քարտուղար**

by A.R.A.R.@

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6

ՀՈՒՆԻՍ

1988 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## Բովանդակություն



Гос. Би... ՀՍՍՀ-... ССР ... им. А. Мясникяна

© ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ 1987

## ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ կենտրոնական կոմիտեի
1988 թվականի մայիսի 23-ին կայացավ
ների սակայն պլենումը:
Պլենումը քննարկեց «XIX համամիութենական կուսակցական կոնֆե-
րանսի առթիվ ՍՄԿԿ կենտկոմի թեզիսների նախագծի մասին» հարցը: Այդ
հարցի առթիվ հանդես եկավ ՍՄԿԿ կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս.
Գորբաչովը:
Պլենումում հանդես եկան Ղազախստանի կոմկուսի Կուստանայի մարզ-
կոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Պ. Դեմիդենկոն, ՍՄԿԿ Լենինգրադի
քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Ն. Գերասիմովը, ՍՍՀՄ Մինիստրնե-
րի խորհրդի նախագահի տեղակալ ընկ. Գ. Գ. Վեդերնիկովը, ՍՄԿԿ Մոսկ-
վայի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Կ. Մեսյացը, ՍՍՀՄ ֆինանս-
ների մինիստր ընկ. Բ. Ի. Գոստևը, ՍՄԿԿ Ալթայի երկրկոմի առաջին քար-
տուղար ընկ. Ֆ. Վ. Պոպովը, Ուկրաինայի կոմկուսի Կիևի մարզկոմի առա-
ջին քարտուղար ընկ. Գ. Ի. Ռևենկոն, ՍՄԿԿ Աստրախանի մարզկոմի առա-
ջին քարտուղար ընկ. Լ. Ա. Բորոդինը, Լիտվայի կոմկուսի Կենտկոմի առա-
ջին քարտուղար ընկ. Ռ.— Բ. Ի. Սոնգայլան, ՍՍՀՄ գիտությունների ակադե-
միայի փոխպրեզիդենտ, Մոսկվայի Մ. Վ. Լոմոնոսովի անվան պետական
համալսարանի ռեկտոր ընկ. Ա. Ա. Լոգունովը, Ուկրաինայի կոմկուսի Լվովի
մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Յա. Պ. Պոգրեբնյակը, ՍՍՀՄ գիտու-
թյունների ակադեմիայի փոխպրեզիդենտ ընկ. Ե. Պ. Վելիխովը, Բելոռուսիայի
կոմկուսի կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ե. Ե. Սոկոլովը, ՍՄԿԿ
կենտկոմի միջազգային բաժնի վարիչի առաջին տեղակալ ընկ. Գ. Մ. Կոր-
նիենկոն, Վրաստանի կոմկուսի կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ջ. Ի.
Պատիաշվիլին, Ուկրաինայի կոմկուսի Դնեպրոպետրովսկի մարզկոմի առա-
ջին քարտուղար ընկ. Վ. Ա. Իվաշկոն, ՍՄԿԿ Կույբիշևի մարզկոմի առաջին
քարտուղար ընկ. Ե. Ֆ. Մուրավյովը, ՍՄԿԿ կենտկոմի միջազգային բաժնի
վարիչի առաջին տեղակալ ընկ. Վ. Վ. Զագլադինը, Ղազախստանի կոմկուսի
կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Վ. Կոլբինը, Ուկրաինայի կոմկուսի
Օդեսայի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Պ. Նոչևկինը:
Եզրափակման խոսքով հանդես եկավ ՍՄԿԿ կենտկոմի գլխավոր քար-
տուղար Մ. Ս. Գորբաչովը:
Քննարկված հարցի առթիվ պլենումն ընդունեց որոշում:
Պլենումում քննարկվեց կազմակերպական հարց: Պլենումը ՍՍՀՄ գրող-
ների միության վարչության առաջին քարտուղար Վ. Վ. Կարպովին ՍՄԿԿ
կենտկոմի անդամության թեկնածուից փոխադրեց անդամի:
Դրանով ՍՄԿԿ կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը:



digitised by A.R.A.R.@

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի 1988 թվականի մայիսի 23-ի պլենումի

# ՈՐՈՇՈՒՄԸ

## XIX ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ԱՌԹԻՎ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԹԵԶԻՍՆԵՐԻ ՄԱՍԻՆ

1. Հավանություն տալ XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի առթիվ Կենտկոմի քաղբյուրոյի ներկայացրած ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներին:

2. ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսները հրապարակել մամուլում՝ կուսակցական կազմակերպություններում, բոլոր աշխատավորների շրջանում լայն քննարկման համար:

3. Հանձնարարել XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսում զեկուցումով հանդես գալու ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովին:

## ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ԹԵԶԻՍՆԵՐԸ XIX ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ԱՌԹԻՎ

**(ՀԱՎԱՆՈՒԹՅՈՒՆ Է ՏՎԵԼ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԸ 1988 Թ. ՄԱՅԻՍԻ 23-ԻՆ)**

*Մեր երկիրը ապրում է պատմական նշանակության հեղափոխական խոր
վերափոխումներ, որոնց նախաձեռնողն ու կազմակերպիչը Սովետական Միու-
թյան կոմունիստական կուսակցությունն է։ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի
ապրիլյան պլենումը, XXVII համագումարը սահմանել են սոցիալ-տնտեսա-
կան զարգացումն արագացնելու, սովետական հասարակությունը համակող-
մանիորեն նորացնելու, սոցիալիզմը որակապես նոր մակարդակի հասցնելու
կուսակցության կուրսը։ Այդ նորարարական ստրատեգիան խորացվել ու կոնկ-
րետացվել է ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան ու հունիսյան
պլենումներում, Հոկտեմբերի 70-ամյակի տոնակատարության օրերին, Կենտ-
կոմի այս տարվա փետրվարյան պլենումում։ Դրա շնորհիվ դրվել են հասա-
րակության կյանքի բոլոր կողմերը վերակառուցելու տեսության և գիտական
քաղաքականության հիմքերը։*

*Վերակառուցման նպատակն է լիովին բացահայտել սոցիալիզմի մար-
դասիրական բնույթն ու ստեղծարար հզորությունը։ Այդ նպատակին հասնելը
անբաժանելի է դեմոկրատիայի ու հրապարակայնության, ժողովրդի ինքնա-
կառավարման զարգացումից, արմատական տնտեսական ռեֆորմից, հասա-
րակության բարոյական մաքրումից, մարդու ազատ ու համակողմանի զար-
գացմանը ներհատուկ ստեղծագործական հնարավորությունների դրսևորումից։*

*Որո՞նք են վերակառուցման առաջին արդյունքները, ի՞նչ պետք է անել
նրա ճանապարհին կանգնած խոչընդոտները հեռացնելու, նորացման հեղա-
փոխական պրոցեսին նոր հուժկու ազդակ տալու, այն անշրջելի դարձնելու
համար։ Կոմունիստներին, բոլոր սովետական մարդկանց մեծապես հուզող*

*այս հարցերին պետք է պատասխան տա XIX համամիութենական կուսակ-
ցական կոնֆերանսը, որը բացվելու է 1988 թվականի հունիսի 28-ին, Մոսկ-
վայում։*

*Կոնֆերանսի օրակարգն է. 1) ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների,
տասներկուերորդ հնգամյակի առաջին կեսի հիմնական արդյունքների իրա-
գործման ընթացքը և վերակառուցման պրոցեսի խորացման ուղղությամբ
կուսակցական կազմակերպությունների խնդիրները. 2) Կուսակցության և հա-
սարակության կյանքի հետագա դեմոկրատացման միջոցառումները։*

*Կոնֆերանսի քննարկմանը դրվող հարցերը կենսական նշանակություն
ունեն կուսակցության և երկրի համար։ Պետք է տալ արվածի իրատեսական
գնահատականը, ձեռք բերվածին մոտենալ քննադատական և ինքնաքննադա-
տական լուրջ վերլուծության դիրքերից, խորամուխ լինել, թե ինչպես են կա-
տարվում ընդունած որոշումները, սրությամբ դնել առաջնահերթ ուշադրություն
պահանջող հարցերը, ընդհանրացնել դրական փորձը, որոշել առաջընթացի
հեռանկարը։*

*Որպես այդ հարցերի վերաբերյալ դիսկուսիայի պլատֆորմ առաջարկվում
են ՍՄԿԿ Կենտկոմի սույն թեզիսները։*

*1. Վերակառուցումը գաղափարաքաղաքական սկզբունքորեն նոր իրավի-
ճակ է ստեղծել հասարակության մեջ։ Այն դարձել է իրողություն, զորեղա-
նում է տարածվելով խորությամբ ու լայնությամբ, ընդգրկելով հասարակու-
թյան կյանքի բոլոր խավերն ու ոլորտները։ Կենտկոմի 1988 թվականի փե-
տրվարյան պլենումը տեղի ունեցող պրոցեսների գաղափարական էու-
թյունը սահմանեց որպես գիտակցության, գաղափարախոսական նորացման
հեղափոխություն։ Մեր ժամանակի բնորոշ առանձնահատկությունը կարծիք-
ների ռեալ պլյուրալիզմի ձևավորումն է, գաղափարների ու շահերի բաց
համադրումը։ Դրա շնորհիվ սովետական մարդիկ հնարավորություն են ստա-
նում ավելի լրիվ օգտագործել իրենց ինտելեկտուալ ու բարոյական պոտեն-
ցիալը, ավելի ակտիվորեն մասնակցել հասարակության կյանքին։*

*Վերակառուցման պլատֆորմի վրա տեղի է ունենում բանվոր դասակար-
գի, գյուղացիության, մտավորականության, բոլոր սոցիալական ուժերի քա-
ղաքական համախմբում։ Սովետական մարդիկ իրենց աշխատանքով ու հա-
սարակական ակտիվությամբ ավելի ու ավելի գործուն պաշտպանություն են
ցույց տալիս երկրում կատարվող հեղափոխական վերափոխումներին։ Այսօր
դա գլխավոր միտումն է հասարակական զարգացման մեջ, վերակառուցման
առաջին փուլի կարևորագույն արդյունքը։*

*Սակայն վերակառուցման պրոցեսը ընթանում է հակասականորեն, դժվա-
րությունների հաղթահարման, հնի դեմ նորի պայքարի միջով։ Հատկապես
կենսունակ դուրս եկան պահպանողական, բյուրոկրատական գիտակցու-
թյան մնացուկները։ Դիրքերը դանդաղ են հանձնում սոցիալիզմի դոգմա-
թյան մնացուկները։ Դիրքերը դանդաղ են հանձնում սոցիալիզմի դոգմա-
տիկ պատկերացումների կողմնակիցները։ Փորձեր են արվում պահպանելու
էկոնոմիկայի և կյանքի այլ ոլորտների ղեկավարման հին, սեղմիչ մեթոդները։*

*Առանց այս բացասական երևույթները հաղթահարելու անկարելի է հա-
ջողությամբ առաջ շարժվել, լուծել վերակառուցման մասշտաբային խնդիր-
ները։ Անհրաժեշտ է բարձրացնել գաղափարաքաղաքական աշխատանքի տե-
սական մակարդակը, խորացնել ստեղծագործական դիսկուսիաները սոցիա-
լիզմի գործուն հարցերի շուրջը։ Պաշտպանելով կարծիքների բազմազանու-
թյունը, ՍՄԿԿ Կենտկոմը ընդգծում է, որ դիսկուսիաներն արգասավոր են մի-
այն սոցիալիզմի հիմքի վրա և հանուն սոցիալիզմի։ Դրանք չպետք է տանեն
դեպի քաղաքական առճակատում, սոցիալական ուժերի խզում, ինչը կբար-
դացներ մեր ամբողջ հասարակության համար կենսական խնդիրների լուծումը։*

*Սա վերաբերում է նաև պատմության բազմաթիվ սուր հարցերի, որոնց
նկատմամբ հետաքրքրությունը արտակարգ կերպով աճել է վերջին ժամա-
նակներս։ Կուսակցությունը հետևողականորեն կվարի բացախոսության ու
հրապարակայնության քաղաքականություն, անցյալի ու ներկայի պրոբլեմների
ազատ քննարկման քաղաքականություն, որովհետև միայն այդպիսի քաղա-
քականությունն է նպաստում սովետական հասարակության բարոյական ա-*



digitised by A.R.A.R.@

ղությունն անցնում է տնտեսական մեխանիզմի վերակառուցման միջով։ Հենց այդ մեխանիզմը պետք է նպատակամղի արտադրության անընդհատ կատարելագործման, ժամանակակից համաշխարհային մակարդակի վրա արտադրանքի որակի պահպանման։

Կյանքը պահանջում է ավելի վճռական միջոցներ ձեռնարկել գիտատեխնիկական առաջադիմության կառավարումը կատարելագործելու, գերատեսչական խոչընդոտները հաղթահարելու գործում։ Կազմակերպական նոր ձևերից են միջճյուղային միավորումները, որոնք հանվել են համապատասխան մինիստրությունների անմիջական ենթակայությունից։ Դրա շնորհիվ նաև հնարավորություններ են ստեղծվում փոխկապակցված իրականացնելու գիտական հետազոտություններ-տեխնիկա և տեխնոլոգիա-ինվեստիցիաներ-արտադրություն-վաճառահանում-սպասարկում շղթան։ Աշխատավորական կոլեկտիվները կկարողանան ավելի արագ, առանց ձգձգումների ու գերատեսչական համաձայնեցումների նորացնել սարքավորումներն ու տեխնոլոգիան։

Գիտատեխնիկական առաջադիմության պրոբլեմները պետք է դիտվեն սոցիալական զարգացման ընդհանուր տեսանկյունից։ Խոշորամասշտաբ նախագծերի սոցիալական փորձաքննության բացակայությունը կարող է էկոլոգիական ու մարդկային ուժի մեծ ծախքեր բերել։ Հարկավոր է դրանք հասցնել նվազագույնի կամ էլ լրիվին բացառել։

Արդի փուլում հասարակության առջև կանգնած նոր խնդիրները զգալիորեն բարձրացնում են գիտության դերը վերակառուցման բոլոր պրոցեսներում։ Հասարակությունը մոտեցել է մի այնպիսի բնագծի, երբ էական առաջանցում է պահանջվում բնական, տեխնիկական ու հասարակական գիտությունների բոլոր ուղղություններում։ Այդ գործում կոչված է հարաճուն ավանդ մուծելու ՍՍՀՄ գիտությունների ակադեմիան։

Սոցիալիզմն այսօր չի կարող զարգանալ առանց գիտատեխնիկական առաջադիմության վրա հենվելու։ Իր հերթին այդ առաջադիմությունը՝ սոցիալիզմի հետ միավորված, դառնում է հասարակության սոցիալական նորացման, նրա առաջընթացի հզոր լծակը։

Մեր քաղաքականության մարդասիրական սկզբունքները նպատակամղված են հասարակության հոգևոր առաջադիմության ապահովմանը, ժողովրդի կրթության ու կուլտուրայի վերելքին։ Անցած երեք տարում էական ուշադրություն է նվիրվել կրթության զարգացմանը նրա տարբեր աստիճաններում ու մակարդակներում։ Ժողովրդական կրթության համակարգի վերակառուցման հարցերը քննարկվել են ՍՄԿԿ Կենտկոմի 1988 թվականի փետրվարյան պլենումում։ Մեր բարձրագույն և միջնակարգ դպրոցը մեծապես հետ է մնացել կյանքի պահանջմունքներից, գիտատեխնիկական ու մշակութային առաջադիմությունից։ Անհրաժեշտ են ամբողջ հասարակության եռանդուն ջանքերը դպրոցի զարգացման գործում դրական փոփոխություններ ապահովելու համար։

Վերակառուցման ընթացքում ավելի ու ավելի նպաստավոր պայմաններ են ստեղծվում սովետական մշակույթի զարգացման, մարդկանց մտավոր ու բարոյական կատարելագործման, տաղանդավոր և օժտված մարդկանց հայտնաբերման, անհատի քաղաքացիական հատկանիշների դաստիարակման համար։ Այդ խնդիրների լուծման գործում ծանրակշիռ ավանդ է մուծում մտավորականությունը։ Զգալիորեն աշխուժացել է նախկինում եղած և նոր ստեղծված միավորումների ու ստեղծագործական միությունների աշխատանքը։ Առանձնակի ուժով է ծառացել երկրի ճակատագրի համար արվեստագետի պատասխանատվության հարցը։

4. Վերակառուցման, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման ՍՄԿԿ կուրսը հենց սկզբից կապվել է սովետական հասարակության դեմոկրատացման հետ, ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման հաստատման հետ։ Այդ առումով տեղի ունեցած փոփոխությունները անհնար է գերագնահատել։ Ճշմարտացիության, հրապարակայնության, քննադատության և ինքնաքննադատության զարգացման շնորհիվ խիստ բարձրացել է երկրի քաղաքական կյանքի ընդհանուր տոնուսը, ծավալվում են դեմոկրատական պրոցեսները արտադրության կառավարման գործում, հարձակում է սկսվել հնացած կառուցվածքների և լճացման երևույթների վրա։ Բայց և այնպես այն, ինչ արվել է մինչև հիմա, կուսակցության ու հասարակության խոր և համակողմանի դե-



մոկրատացման՝ իր նշանակությամբ ու բարդությամբ հսկայական խնդրի լուծման սկիզբն է միայն։

Էկոնոմիկայի մեջ, սոցիալական ոլորտում և մշակույթի ասպարեզում երեք տարում ձեռք բերվածի օբյեկտիվ վերլուծությունը, վերակառուցման ընթացքում ծագած պրոբլեմների իմաստավորումը հանգեցրել են սովետական հասարակության քաղաքական սիստեմի ռեֆորմի անհրաժեշտության հետևությանը։ Դրա նպատակն է աշխատավորների լայն զանգվածներին ռեալ կերպով ներգրավել պետական ու հասարակական բոլոր գործերի կառավարմանը, ավարտել սոցիալիստական իրավական պետության ձևավորումը։

Ընդ որում խոսքը Հոկտեմբերյան հեղափոխության ծնունդ հանդիսացող սոցիալիստական պետականության հիմնարար սկզբունքների ամրապնդման ու զարգացման մասին է։ Այդ սկզբունքները, և առաջին հերթին ժողովրդի իշխանությունը, որի ավանգարդում ընթանում է կոմունիստների կուսակցությունը, սոցիալական առաջադիմության ուղիով մեր հայրենիքի հետագա զարգացման պարտադիր պայմանն են։ Վերակառուցման շնորհիվ սովետական հասարակության քաղաքական սիստեմը պետք է ազատվի այն ամենից, ինչ կապված է անհատի պաշտամունքի հետևանքների, կառավարման վարչահրամայական մեթոդների, բյուրոկրատիզմի, իշխանությունից աշխատավորության օտարման, կուսակցական ու պետական կյանքի լենինյան նորմերից նահանջի հետ։ Այն պետք է դառնա դինամիկ, ժամանակին նորանալու ընդունակ՝ հաշվի առնելով ներքին և միջազգային կյանքի փոփոխվող պայմանները։

5. Վերակառուցման լույսով նորովի է հառնում ՍՄԿԿ-ի դերը որպես սովետական հասարակության ղեկավար և կազմակերպիչ ուժի։

ՍՄԿԿ Կենտկոմը ելնում է լենինյան այն կոնցեպցիայից, որ կուսակցությունը բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների քաղաքական ավանգարդն է։ Կուսակցությունը, հենվելով մարքս-լենինյան ուսմունքի վրա, կոչված է մշակել հասարակական զարգացման տեսությունն ու ստրատեգիան, ներքին ու արտաքին քաղաքականությունը, ձևավորել սոցիալիստական նորացման գաղափարախոսությունը, քաղաքական ու կազմակերպչական աշխատանքը մասսաների մեջ, կադրերի դաստիարակությունն ու տեղաբաշխումը։

Վ. Ի. Լենինի կենդանության օրոք և նրա ղեկավարությամբ կուսակցությունն այդպես էլ գործում էր, սակայն նրա մահից հետո նահանջ սկսվեց լենինյան սկզբունքներից, սահմանափակվեց կուսակցության համար ավանդական դիսկուսիաների ազատությունը, խախտվեցին կոլեգիալության և ներկուսակցական դեմոկրատիայի սկզբունքները։ Այս արատավոր պրակտիկան այս կամ այն չափով պահպանվում էր նաև լճացման տարիներին։ Ընտրովի պաշտոնները գրավելու սահմանափակումների բացակայությունը հանգեցրել էր կադրերի նորացման բնական պրոցեսի խախտմանը, ղեկավար աշխատողների մի մասը սկսել էր իր պոստերն ընկալել որպես ցմահ տրված, սովորել էր իրեն համարել անսխալական, չարաշահում էր իշխանությունը, անուշադիր վերաբերմունք էր ցուցաբերում շարքային կուսակցականների, աշխատավորների նկատմամբ։

Ստեղծված իրավիճակը ծանր անդրադարձավ ՍՄԿԿ Կենտկոմի, կառավարության, տեղերում կուսակցական կազմակերպությունների գործունեության, կոմունիստների ակտիվության վրա։ Կուսակցական մարմինները սկսեցին ավելի ու ավելի շատ իրենց վրա վերցնել տնտեսական ու վարչական կառավարման ընթացիկ խնդիրների անմիջական լուծումը, փոխարինելով սովետներին ու մյուս պետական մարմիններին։ Դա բացասաբար անդրադարձավ կուսակցության հիմնական ֆունկցիաների իրականացման վրա, հասցրեց նրա քաղաքական ու գաղափարական ազդեցության թուլացման, սրեց հասարակական զարգացման շատ պրոբլեմներ։

Կուսակցությունն իր մեջ ուժ գտավ խիզախորեն և ինքնաքննադատաբար գնահատելու ստեղծված իրավիճակը։ Սկսելով վերակառուցումը, նա քայլ առ քայլ վերափոխում է իրեն, նորացնում ներկուսակցական կյանքը։ Անհետաձգելի խնդիր է՝ ստեղծել այնպիսի քաղաքական մեխանիզմներ ու երաշխիքներ, որոնք ապագայում բացառեին հասարակության կուսակցական ղեկավարման լենինյան սկզբունքների խախտման հնարավորությունը։

Հաշվի առնելով կուսակցական ժողովներում, աշխատավորական կոլեկ-



digitised by A.R.A.R.@

տիվներում ու մամուլում արտահայտված կարծիքները, ՍՄԿԿ Կենտկոմը նպատակահարմար է գտնում կոնֆերանսում քննության առնել հետևյալ առաջարկությունները։

Լիովին վերականգնել դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի լենինյան ըմբռնումը, որի համաձայն պետք է ապահովվի դիսկուսիաների ազատությունը հարցերի քննարկման փուլում և գործողությունների միասնությունը մեծամասնության կողմից որոշման ընդունումից հետո։

Պետության հետ կուսակցության հարաբերություններում ելնել նրանց ֆունկցիաների հստակ սահմանազատման լենինյան սկզբունքներից։ Բոլոր կուսակցական կազմակերպությունները պարտավոր են գործել ՍՍՀՄ սահմանադրության և սովետական օրենքների շրջանակներում։ Պետք է բացառվի կուսակցական կոմիտեների կողմից այնպիսի որոշումների ընդունումը, որոնք ուղղակի ցուցումներ պարունակեն պետական, տնտեսական մարմիններին և հասարակական կազմակերպություններին։ ՍՄԿԿ-ն իր քաղաքական կուրսը վարում է պետական իշխանության մարմիններում, հասարակության կյանքի բոլոր ոլորտներում աշխատող կոմունիստների միջոցով։

Ելնելով ՍՄԿԿ-ի որպես քաղաքական ավանգարդի խնդիրներից և հասարակության մեջ տեղի ունեցող խոր փոփոխություններից, հարկավոր է լրջորեն վերակառուցել սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությունը։ Մնալով որպես յուրաքանչյուր կոլեկտիվի քաղաքական միջուկ, նրանք չպետք է աշխատավորական կոլեկտիվներին և նրանց մարմիններին փոխարինեն այն ֆունկցիաների կատարման գործում, որոնք նախատեսված են պետական ձեռնարկության մասին, կոոպերացիայի մասին օրենքներով, մյուս օրենսդրական ակտերով։ Գործելով նախ և առաջ կոմունիստների միջոցով և աշխատելով մարդկանց հետ, կուսակցական կազմակերպությունները պետք է հասնեն այն բանին, որ յուրաքանչյուր կոլեկտիվ լիովին կատարի իր վրա դրված ֆունկցիաները, իրականացնի իր դեմոկրատական իրավունքները։

Այս տեսանկյունից պետք է վերաիմաստավորվի կուսակցական ժողովների, կուսակցական կոմիտեների, յուրաքանչյուր կոմունիստի դերը կուսակցության որոշումների կենսագործման ասպարեզում։ Հարկավոր է լիովին վերածնել բացախոսության, դիսկուսիաների, քննադատության ու ինքնաքննադատության, կուսակցական ընկերականության ու կարգապահության, կոլեկտիվիզմի ու անձնական պատասխանատվության մթնոլորտը։ Հենց այդ ուղղությամբ են այժմ ընթանում պրոցեսները կուսակցական կազմակերպությունների կյանքում։ Դրանք հարկավոր է ըստ ամենայնի պաշտպանել ու զարգացնել։

Կուսակցության և հասարակության մեջ լայնորեն քննարկվում են կուսակցական շարքերի որակական կազմի, կոմունիստների կողմից իրենց ավանգարդային դերի կատարման հարցերը։ Այս կապակցությամբ այն կարծիքն է հայտնվում, որ «կարգադրագրման» միջոցով կուսակցական շարքերի աճի կարգավորման պրակտիկան հակասում է բուն կուսակցության և ամբողջ հասարակության զարգացման ռեալ պահանջմունքներին։

Ընդհանուր կարծիքի համաձայն, պետք է վճռականորեն բարձրացվեն պահանջները կուսակցության մեջ ընդունվողների նկատմամբ, որպեսզի նրա շարքերն անցնեն իրոք արժանի մարդիկ՝ քաղաքական, բարոյական ու գործարար բարձր հատկանիշներով օժտված, կուսակցության ծրագրային նպատակների համար պայքարող համոզված մարտիկներ։ Հարկավոր է կուսակցության մեջ ընդունելիս անպայման հաշվի առնել աշխատավորական կոլեկտիվի կարծիքը։

Կոնֆերանսում քննության առնել մինչև ՍՄԿԿ հերթական համագումարը մնացած ժամանակամիջոցում կոմունիստների հասարակական-քաղաքական ատեստավորման անցկացման նպատակահարմարության հարցը՝ որպես կուսակցության ինքնամաքրման և ամրապնդման արդյունավետ միջոցի։ Կուսակցական կազմակերպությունների դռնբաց ժողովներում կոմունիստների աշխատանքի քննարկումը կծառայի իրենց կոլեկտիվների հասարակական կյանքում, վերակառուցման գործում նրանց ակտիվության, անձնական ավանդի մեծացմանը։

ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումից հետո կուսակցված փորձի լույսով հարկավոր է փոփոխություններ մտցնել ընտրովի կուսակցական մարմինների ձևավորման կարգի մեջ։ Անհրաժեշտ է նորմ դարձնել իսկական մրցակցությունը, թեկնածությունների լայն քննարկումն ու գաղտնի քվեարկությունը։ Ընդ որում անկյունաքար պետք է դառնան աշխատողի գաղափարական, բարոյական և գործարար հատկանիշները, նրա քաղաքական հեղինակությունը, ակտիվ դիրքորոշումը վերակառուցման համար մղվող պայքարում, և ոչ թե գրաված պաշտոնը։ Կոմունիստներն իրավունք ունեն բոլոր կուսակցական կոմիտեներում ընտրությունների ժամանակ առաջադրել եղած մանդատներից ավելի թեկնածուներ։

Կուսակցական կոմիտեների անդամների ու քարտուղարների առաջադրման, քննարկման և ընտրության այսպիսի կարգը կարելի էր տարածել նաև կուսակցական մարմինների ձևավորման պրոցեսի վրա՝ կուսակցության շրջկոմներից ու քաղկոմներից մինչև միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներ և ՍՄԿԿ Կենտկոմ։

Բոլոր կուսակցական կոմիտեների համար, սկսած շրջանային և քաղաքային կոմիտեներից, սահմանել լիազորությունների միասնական ժամկետ՝ 5 տարի։ Ընդ որում հարկավոր է ՍՄԿԿ-ում ընտրովի պաշտոնների գրավումը սահմանափակել անընդմեջ երկու ընտրական ժամկետներով։ Անընդմեջ երրորդ ժամկետով ընտրություն կարող է լինել միայն կոմունիստների նախաձեռնությամբ և պահանջվում է նախնական որոշում ընտրություններին թույլ տալու մասին։ Այսպիսի որոշումն ընդունվում է գաղտնի քվեարկությամբ՝ կուսակցական կոմիտեի անդամների ձայների առնվազն 3/4-ով։

Կուսակցության որպես քաղաքական ավանգարդի հաստատման գործում առանձնակի պատասխանատվություն է ընկնում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի վրա։ Նա պետք է ըստ ամենայնի զարգացնի ու ամրապնդի կոլեգիալության սկզբունքներն իր աշխատանքում այն հաշվով, որպեսզի կուսակցության քաղաքական կուրսի իրականացման հետ կապված հիմնական հարցերը լուծվեն Կենտկոմի բոլոր անդամների մասնակցությամբ և լայն քննարկման հիման վրա։ Հարկավոր է կոնֆերանսում քննության առնել հնարավոր առաջարկությունները պլենումների միջև ընկած ժամանակամիջոցում Կենտկոմի անդամների կոլեգիալ աշխատանքի նոր ձևերի մասին։ Այս ամենը վերջին հաշվով պետք է նպատակամղված լինի կուսակցության Կենտրոնական կոմիտեի դերի բարձրացմանը։

Թարմ ուժերի մշտական հոսքի ապահովման համար նախատեսել համագումարների միջև ընկած ժամանակամիջոցում Կենտկոմի կազմի մասնակի նորացման հնարավորություն։ Ընդ որում այդ առումով որոշումներ պետք է ընդունի որակյալ մեծամասնությունը՝ գաղտնի քվեարկությամբ։

Կուսակցության որպես քաղաքական ավանգարդի դերի բարձրացումը, կուսակցական կոմիտեների և պետական, տնտեսական մարմինների ֆունկցիաների բաժանումը հաշվի առնելով, անհրաժեշտ փոփոխություններ ձեռնարկել կուսակցական ապարատի կառուցվածքում և կազմում։ Պետք է կենսագործվի ընտրովի կուսակցական մարմիններին ապարատի խստիվ ենթակայության և հաշվետվության սկզբունքը, վճռական պայքար մղվի բյուրոկրատիզմի և կոմսնապարծության, կուսակցական կյանքի չարդարացված գաղտնիացման դեմ։

Դեմոկրատացման պայմաններում լուրջ նորացման կարիք ունի կուսակցության կադրային քաղաքականությունը։ Իրեն սպառում է ձևական-անվանակարգային մոտեցումը կադրերի ընտրության ու տեղաբաշխման նկատմամբ։ Կուսակցական կոմիտեների աշխատանքի հիմնական մեթոդը պետք է դառնա կադրերի պատրաստման և վերապատրաստման կազմակերպումը, նրանց դաստիարակությունն ու ղեկավար պոստերի համար ինչպես կոմունիստների, այնպես էլ անկուսակցականների երաշխավորումը։ Կադրային հարցերի վերջնական լուծումը պետք է որոշվի ընտրությունների արդյունքներով։

Նպատակահարմար է կոնֆերանսում քննության առնել կուսակցության մեջ վերահսկիչ-վերստուգիչ աշխատանքի կատարելագործման հարցը։ Այժմ գործում են ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովը և ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության կոմիտեն։ Առաջարկություն է մտցվում այսուհետև ունենալ մեկ մարմին, որը ընտրվեր կուսակցության





digitised by A.R.A.R.@

համագումարի կողմից և վերահսկեր կոմունիստների կողմից կուսակցական կարգապահության, ՍՄԿԿ կանոնադրության պահանջների կատարումը, կուսակցական մարմինների ֆինանսատնտեսական գործունեությունը։

Այս բոլոր առաջարկությունների նպատակը պետք է դառնա ներկուսակցական կյանքի դեմոկրատական սկզբունքների հետևողական կիրառումը, կուսակցության մարտունակության և սովետական հասարակության հեղափոխական նորացման պրոցեսները գլխավորելու, վերակառուցմանը տոն տալու նրա ընդունակության բարձրացումը։

6. Մեր հասարակության ու պետության դեմոկրատացման գլխավոր ուղղությունն է՝ լրիվ ծավալով վերականգնել ժողովրդական դեպուտատների սովետների դերն ու լիազորությունները որպես ժողովրդական ներկայացուցչության լիիշխան մարմինների։

Վ. Ի. Լենինը ի դեմս Ռուսաստանի հեղափոխության փորձից ծնված սովետների հայտնագործեց մի քաղաքական ձև, որը համապատասխանում է սոցիալիզմի բնույթին։ Լինելով միաժամանակ իշխանության ներկայացուցչական մարմիններ և բնակչության մասսայական կազմակերպություններ, սովետներն իրենց մեջ օրգանապես զուգորդում են պետականության և ինքնակառավարման սկզբունքները։ Ունենալով հսկայական դեմոկրատական պոտենցիալ, նրանք ցուցադրեցին իրենց կենսունակությունն ու հաստատեցին լենինյան հայտնագործության ճշմարտացիությունը։

Դրա հետ մեկտեղ մենք տեսնում ենք սովետների գործունեության մեջ տեղ գտած լուրջ թերությունները, նրանց աշխատանքից աշխատավորների անբավարարվածությունը։ Հայտնի ձևախեղումների հետևանքով ներկայացուցչական մարմինների իրավունքներն ու լիազորությունները սահմանափակվել են, պահպանվում է կուսակցական կոմիտեների կողմից չարդարացված խնամակալությունը նրանց նկատմամբ։ Մինիստրություններն ու գերատեսչությունները շատ դեպքերում նրանց գլխի վրայով են լուծում տնտեսական ու սոցիալական զարգացման հարցերը։ Գործադիր կոմիտեներն ու նրանց ապարատը հաճախ զավթում են սովետների ֆունկցիաները, դեպուտատներին բաժին թողնելով միայն փաստորեն կանխորոշված հարցերի վավերացումը։ Անհրաժեշտ է արմատապես փոխել այդ վիճակը, սովետներին վերադարձնել իրական իշխանության լիազորությունները, նրանց քննարկմանն ու որոշմանը հանձնելով պետական, տնտեսական և սոցիալ-մշակութային կյանքի առանց բացառության բոլոր կոնկրետ հարցերը։

Հարկավոր է էապես ընդլայնել տեղական սովետների նյութաֆինանսական հնարավորությունները։ Ապահովել տեղական բյուջեների եկամուտների ձևավորումը երկարաժամկետ նորմատիվների հիման վրա, ընդ որում նկատի ունենալով նախ և առաջ ստորին սովետների բյուջեներում համապատասխան տարածքում գտնվող ձեռնարկություններից ու տնտեսական կազմակերպություններից ստացվող մուտքերի ընդլայնումը։ Պետք է սահմանվի իշխանության տեղական մարմինների լիակատար պատասխանատվությունն ու ինքնուրույնությունը տերիտորիաների զարգացման հարցերի լուծման գործում, լայնորեն օգտագործելով ձեռնարկությունների ու կազմակերպությունների հետ տնտհաշվարկային, պայմանագրային հարաբերություններն ու փոխհարաբերությունների մյուս մեթոդները՝ անկախ ենթակայությունից։ Հարկավոր է հաստատակամորեն արմատախիլ անել իշխանության ու կառավարման վերադաս մարմինների միջամտությունը ստորին տեղական սովետների իրավասությանը պատկանող հարցերի լուծմանը, ինչպես նաև բազմաթիվ անհարկի համաձայնեցումները։

Առանձնակի նշանակություն է ստանում աշխատավորական կոլեկտիվների խորհուրդների հետ տեղական սովետների հարաբերությունների ճիշտ դրվածքը։ Ընդ որում, հարկավոր է ելնել այն բանից, որ ժողովրդական դեպուտատների սովետը հանդես է գալիս որպես ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների սոցիալական զարգացման պլանների մշակման ու կատարման, արտադրության կառավարման դեմոկրատական սկզբունքների խորացման կոորդինատոր, այն բանից բնակչության շահերի պաշտպան, ինչը Վ. Ի. Լենինն անվանում էր չափազանց մեծ «գերատեսչական ջանադրություն»։



Սովետների ֆունկցիաների փոփոխումը, հարցերի ավելի մանրազնին ու գործիմաց քննարկումը կպահանջեն մեծացնել դրանց նստաշրջանների տևողությունը։ Նախատեսել, որ դեպուտատների մի մասը ամբողջ ընտրական ժամանակաշրջանում կամ պարբերաբար պետք է ազատվի ծառայողական և արտադրական պարտականություններից՝ սովետներում, մշտական հանձնաժողովներում և ընտրական օկրուգներում աշխատելու համար։

Առավելագույնս ընդլայնել սովետների գործունեության հրապարակայնությունն ու բացահայտությունը։ Նրանց նիստերը պետք է մատչելի լինեն քաղաքացիների, մասսայական ինֆորմացիայի միջոցների ներկայացուցիչների ազատ այցելության համար, իսկ աշխատանքի արդյունքների մասին սիստեմատիկաբար պետք է տեղյակ պահվեն ընտրողները, բնակչությունը։

Սովետների իսկական գերակայություն հաստատել գործադիր մարմինների վրա։ Սահմանել, որ սովետին հաշվետու կառավարական մարմինների աշխատողները չեն կարող միաժամանակ նրա դեպուտատները լինել։ Այս կանոնը տարածել այն անձանց վրա, ովքեր մտնում են հանրապետությունների մինիստրների խորհուրդների կազմի մեջ, և հազվագյուտ բացառություններով՝ միութենական կառավարության անդամների վրա, ինչպես նաև դատավորների, պետական իրավարարների և դատախազների վրա։ Կառավարման մարմինների պաշտոնատար անձանց նշանակումը պետք է իրականացնեն սովետները, որպես կանոն, մշտական հանձնաժողովների համապատասխան եզրակացություններից հետո։

Նախատեսել տեղական սովետներում (բացի գյուղականներից և ավանայիններից) սովետների նախագահությունների ստեղծում, որոնք կստանձնեին դեպուտատական գործունեության կազմակերպումը, մշտական հանձնաժողովների և դեպուտատական խմբերի աշխատանքի կոորդինացումը, իսկ նստաշրջանների միջև ընկած ժամանակամիջոցում՝ գործկոմների աշխատանքի վերահսկողությունը։ Ընդսմին նպատակահարմար է գործկոմների պարտականությունները կենտրոնացնել տնտեսական-կառավարչական, կատարողական գործունեության վրա։

Դեպուտատների աշխատանքում լավագույն հաջորդայնության և արդյունավետության ապահովման նպատակով սահմանել երկրի ժողովրդական դեպուտատների բոլոր սովետների լիազորությունների միասնական ժամկետ՝ հինգ տարի։

Ամբողջ իշխանությունը վարից վեր սովետներին հանձնելը ենթադրում է
նաև երկրի իշխանության բարձրագույն մարմնի դերի արմատական մեծա-
ցում։ Նրա կառուցվածքում և գործունեության մեջ պետք է լրիվին հաշվի
առնվի սովետական քաղաքական սիստեմի գործողության կուտակված փորձը,
ներառյալ նաև սովետների համագումարների և ՍՍՀՄ կենտգործկոմի աշխա-
տանքի Վ. Ի. Լենինի օրոք ստեղծված պրակտիկան։ Այստեղ հնարավոր են
զանազան տարբերակներ և առաջարկություններ։ Դրանց մի մասը արդեն ար-
վել է ներկայումս անցկացվող դիսկուսիայի ընթացքում. իշխանության բարձ-
րագույն մարմնի նստաշրջանների աշխատանքի տևողությունն ավելացնելու
մասին. պալատների լիազորությունները հստակորեն սահմանազատելու և
գործառնական դիմազրկությունը հաղթահարելու մասին. դեպուտատների մի
մասին մեր հասարակության քաղաքական սիստեմի մեջ մտնող հասարակա-
կան կազմակերպություններից անմիջականորեն ընտրելու մասին և այլն։

Պետական կյանքի լենինյան սկզբունքների խախտման դեմ լուրջ երաշ-
խիք պետք է դառնա այն կանոնը մտցնելը, որի համաձայն ոչ մի անձ չի կա-
րող պետական ընտրովի պաշտոններ զբաղեցնել անընդմեջ երկու ժամկետից
ավելի երկար ժամանակով, այսինքն տասը տարի։ Անընդմեջ երրորդ ժամկե-
տով ընտրություն կարող է տեղի ունենալ դեպուտատների նախաձեռնությամբ
և պահանջում է նախնական որոշում ընտրություններին մասնակցելու թույլ-
տվության մասին։ Նման որոշում ընդունվում է գաղտնի քվեարկությամբ, սո-
վետի դեպուտատների քվեների առնվազն երեք քառորդի դեպքում։

Հարկավոր է խստիվ կատարել ՍՍՀՄ սահմանադրության այն կարգը, որ միևնույն քաղաքացին չի կարող միաժամանակ լինել ավելի քան երկու սովետի դեպուտատ։

Սովետների դերի վճռական մեծացման անհրաժեշտությունը նկատի ու-



digitised by A.R.A.R.@

նենալով, հարկավոր է իրականացնել ընտրական համակարգի ռեֆորմ։ Դրա նպատակն է ապահովել դեպուտատության թեկնածուների ազատ առաջադրումը, թեկնածությունների լայն ու համակողմանի քննարկումը աշխատավորների ժողովներում, մասսայական ինֆորմացիայի միջոցներով։

Ընտրությունները պետք է լինեն ընտրողների կամքի արտահայտության բնական արդյունքը, որոնք նախապատվությունը տալիս են սկզբունքային, գործիմաց, եռանդուն մարդկանց, որոնք ընդունակ են աշխատավորներին արժանավայել կերպով ներկայացնել սովետական իշխանության մարմիններում, արտահայտել նրանց սոցիալական, ազգային և մասնագիտական շահերի ամբողջ սպեկտրը։

Նոր պայմաններում մեծանում է սովետական կառավարության՝ որպես պետական իշխանության բարձրագույն գործադիր-կարգադրիչ մարմնի դերը ներքին և արտաքին քաղաքականության իրականացման, երկրի կառավարման գործում, տնտեսական, սոցիալական և մշակութային զարգացման պլանների ու հեռանկարային ծրագրերի մշակման և իրականացման ասպարեզում։

Կոնֆերանսում հարկավոր է պատշաճ ուշադրություն դարձնել պետական կառավարման համակարգի վերակառուցմանը, նկատի ունենալով հասարակության մեջ տեղի ունեցող դեմոկրատացումը և արմատական տնտեսական ռեֆորմը։ Պետական մարմինների գործունեության հիմնական բովանդակությունը պետք է դառնա բոլոր կազմակերպությունների և հիմնարկների արդյունավետ աշխատանքի համար տնտեսական և կազմակերպական-իրավական պայմանների ստեղծումը։ Հարկավոր է այդ պարտականություններին համապատասխանեցնել ապարատի կառուցվածքը և դրա թվակազմը, վերացնելով ավելորդ օղակները։ Հրամայական-ճնշիչ մեթոդները, բյուրոկրատիզմը, քաշքշուկը արմատախիլ անելու նպատակով պետք է կառավարման մարմինների գործունեության խիստ վերահսկողություն իրականացվի սովետների, ժողովրդական վերահսկողության, հասարակայնության կողմից։ Այդ նույն նպատակներին են կոչված ծառայելու լայն հրապարակայնությունը, կառավարչական ապարատի աշխատանքի բացահայտությունը։

Սովետական հասարակության վերակառուցման և դեմոկրատացման պայմաններում անհրաժեշտ է լրիվ չափով մարմնավորել վերահսկողության կազմակերպման լենինյան գաղափարները, վերահսկողությանը ներգործուն բնույթ տալ, այն դարձնել պետական և հասարակական գործերի լուծմանը բանվորների, գյուղացիների, մտավորականության, մեր հասարակության բոլոր խավերի ներկայացուցիչների ուղղակի և անմիջական մասնակցության գործիք։

Այս կապակցությամբ նպատակահարմար է ստեղծել միասնական, իշխանության ընտրովի մարմիններին ենթակա հասարակական-պետական վերահսկողության համակարգ։ Աշխատավորական կոլեկտիվներում և տերիտորիալ միավորումներում հենվելով իր խմբերի վրա, նման կազմակերպությունը կկարողանար մեծ ավանդ ներդնել ներկայումս մեր ժողովրդի առջև ծառացած խնդիրների լուծման մեջ։

7. Քաղաքական սիստեմի վերակառուցման շրջանակներում հարկավոր է քննարկել և ձեռնարկել սովետական ֆեդերացիայի հետագա զարգացման հասունացած միջոցներ։ Հետհոկտեմբերյան 70 տարում լենինյան ազգային քաղաքականության վարման ակնառու արդյունքները հանրահայտ են։ Հսկայական, պատմական կարևորություն ունեցող աշխատանք է կատարվել ազգամիջյան երկպառակությունը հաղթահարելու, ազգերի ինքնորոշման իրավունքը ամրապնդելու, ազգային մշակույթները վերածնելու և զարգացնելու, երբեմնի հետամնաց ազգային ծայրամասերի առաջադիմությունն արագացնելու նպատակով։ Ստեղծվել և հաջողությամբ գործում է ամբողջական ժողովրդատնտեսական համալիր՝ սովետական ժողովուրդների միասնության նյութական հիմքը։

Դրա հետ մեկտեղ կյանքը ցույց է տալիս, որ մշտական ուշադրություն է պահանջվում ազգամիջյան հարաբերությունների հարցերի, յուրաքանչյուր ազգի և ազգության զարգացման նկատմամբ։ Այս հարցերի լուծման հիմքն են այն քաղաքական կուրսը, որը բոլոր ազգերի շահերի բավարարումը զուգակցում է նրանց մերձեցմանն ու փոխըմբռնմանը, ինտերնացիոնալիստական



գաղափարախոսությունը, որն անհամատեղելի է նացիոնալիզմի և շովինիզմի հետ։

Ներկայումս անհամեմատ մեծացել է բոլոր սովետական հանրապետությունների և ինքնավար կազմավորումների տնտեսական, մշակութային, կադրային պոտենցիալը, տեղի է ունենում ազգային ինքնագիտակցության օրինաչափ աճ։ Ազգերի հետագա զարգացման և միաժամանակ նրանց բարեկամության, սովետական հասարակության համախմբվածության ամրապնդման բանալին միութենական և ինքնավար հանրապետությունների, ազգային մյուս կազմավորումների ինքնուրույնության և ընդհանուր միութենական պետական շահերի համար նրանց պատասխանատվության օրգանական միահյուսումն է։ Սա է մեր ուժը և ինչպես ամբողջ երկրի, այնպես էլ յուրաքանչյուր առանձին ազգի և ազգության բարգավաճման երաշխիքը։

Ապակենտրոնացումը և տեղերին բազմաթիվ կառավարչական պարտականությունների առավելագույն հանձնումը լրիվ չափով վերաբերում են մեր ազգային պետականության և ինքնավարության բոլոր ձևերին։ Այստեղ պահանջվում է ՍՍՀՄ սահմանադրության դրույթների և սովետական օրենքների անշեղ կատարում, որոնք երաշխավորում են միութենական և ինքնավար հանրապետությունների, ինքնավար մարզերի և օկրուգների իրավունքները։

Գործնական առումով անհրաժեշտ է ակտիվացնել քաղաքական սիստեմի այն հաստատությունները, որոնց միջոցով պետք է բացահայտվեն և համաձայնեցվեն ազգային շահերը։

Հարկ է հոգ տանել, որ իրենց պետական և տարածքային կազմավորումները չունեցող ազգերին ու ազգություններին ընձեռվեն իրենց պահանջմունքների արտահայտման ու բավարարման մեծ հնարավորություններ։

ՍՄԿԿ Կենտկոմը գտնում է, որ ազգամիջյան հարաբերություններում ծագող պրոբլեմները պետք է լուծվեն իրոք դեմոկրատական հիման վրա, վերակառուցման ոգով։ Բոլոր ազգությունների կոմունիստները միշտ եղել են մեր երկրի ժողովուրդների սոցիալիստական մեծ միության ցեմենտող ուժը, հոգին։ Նրանք կոչված են այսուհետև էլ իրականացնելու այդ վսեմ ու պատասխանատու առաքելությունը։

8. Սովետական հասարակության հետևողական դեմոկրատացման պրոցեսը պետք է ավարտի սոցիալիստական իրավական պետության՝ որպես քաղաքական իշխանության կազմակերպման ու գործողության այնպիսի ձևի ստեղծումը, որը լիովին համապատասխանի սոցիալիզմին, սոցիալիստական դեմոկրատիային։ Դրա արմատական գիծը ժողովրդի կամքն արտահայտող օրենքի գերակայությունն է ու հաղթանակը։ Խստիվ իրավական հիմքի վրա պետք է գործեն պետական, կուսակցական մարմինները, հասարակական կազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները, բոլոր պաշտոնատար անձինք և քաղաքացիները։

Մեր համաժողովրդական պետության բնութագիրը լրացնելով «իրավական» հասկացությամբ, հարկ է մեկ անգամ ևս ընդգծել, որ ոչ միայն քաղաքացիներն են պատասխանատվություն կրում պետության հանդեպ, այլ նաև պետությունն է պատասխանատվություն կրում քաղաքացիների հանդեպ։ Նա պարտավոր է մշտական հոգածություն հանդես բերել սովետական մարդկանց իրավունքների և ազատությունների երաշխիքների ամրապնդման նկատմամբ։ Դա վերաբերում է սոցիալական իրավունքների (աշխատանքի, հանգստի, կրթության, առողջության պահպանության, սոցիալական ապահովության և այլն) հետագա ընդլայնմանն ու հարստացմանը, որոնց հուշակողն աշխարհում դարձավ սովետների երկիրը։ Դա վերաբերում է սահմանադրական ազատությունների (խոսքի, մամուլի, ժողովների, միտինգների, փողոցային երթերի ու ցույցերի ազատություն, խղճի ազատություն և այլն) իրագործման համար նյութական և իրավական պայմանների ստեղծմանը։ Դա վերաբերում է նաև քաղաքացու անձնական իրավունքների (անձի, բնակարանի անձեռնմխելիություն, գրագրության, հեռախոսային խոսակցությունների գաղտնիություն և այլն) երաշխիքների ամրապնդմանը։

Այս բոլոր ուղղություններով մենք պետք է այսուհետև էլ առաջ ընթանանք, բացահայտելով սոցիալիստական հասարակության բնույթի մեջ առկա հնարավորությունները, վճռականորեն արմատախիլ անելով խեղաթյուրումներն



2. «Լենինյան ուղիով», № 6

digitised by A.R.A.R.@

ու ձևախեղումները, որոնք սոցիալիստական կարգերին անհարիր կառավարման ավտորիտար մեթոդների, պետական կյանքի լենինյան սկզբունքներից հեռանալու հետևանքը եղան։

Այս նպատակով պետք է իրականացվի բոլոր այն մարմինների աշխատանքի արմատական բարելավմանը նպատակամղված իրավական խոշոր ռեֆորմ, որոնք պարտավոր են ամրապնդել օրինականությունը, պաշտպանել պետական կյանքի դեմոկրատական սկզբունքները, քաղաքացիների իրավունքներն ու ազատությունները։

Իրավական ռեֆորմի առաջնահերթ միջոցառումների թվում են արդարադատության դերի արմատական մեծացումը, դատավարության դեմոկրատական հիմունքների, կողմերի մրցողականության և հավասարության, հրապարակայնության, անմեղության կանխավարկածի խստիվ կիրառումը։ Ուշադրության են արժանի դատարանում առավել կարևոր գործեր քննելիս ժողովրդական ատենակալների թիվն ավելացնելու առաջարկությունները։

Նոր ռեժիմի պետք է փոխադրվի դատախազության աշխատանքը, լենինյան ըմբռնմանը համապատասխան այն կոչված է ապահովելու օրենքների միատեսակ իրականացման արդյունավետ հսկողությունը, հաստատակամորեն կանգնելու սովետական քաղաքացու իրավունքների և շահերի պաշտպանության, պետական ու հասարակական կարգապահության կիրառման դիրքերում։ Պետք է հասնել այն բանին, որ դատավորները, դատախազները, քննիչները զերծ լինեն ամեն տեսակ ճնշումից և իրենց գործունեության արվող միջամըտությունից։ Նրանք պետք է ենթարկվեն օրենքին և միայն օրենքին։

Օրինականության ամրապնդմանը պետք է ծառայեն հանցագործությունների և հասարակական կարգի խախտումների դեմ մղվող պայքարում միլիցիայի պատասխանատվության վճռական մեծացումը, պետական արբիտրաժի հնարավորությունների ընդլայնումը և փաստաբանական ծառայության ակտիվության ուժեղացումը։ Զգալի զարգացման են կարոտ ժողովրդական տնտեսության իրավական ծառայությունը, բնակչության իրավաբանական պարտուսի և դաստիարակության կազմակերպումը։

Պետք է մեծ աշխատանք կատարվի սովետական օրենսդրության կատարելագործման և օրինակակարգավորման նպատակով։ Մի կողմից, հարկավոր է չեղյալ հայտարարել հնացած օրենքները և բազմաթիվ գերատեսչական հրահանգները, որոնք ներհակ են տնտեսական ու քաղաքական սիստեմի ռեֆորմի պահանջներին, դարձել են արգելակման մեխանիզմի մի մասը։ Մյուս կողմից, պետք է ստեղծել նոր օրենքների կոմպլեքս, որոնք համապատասխանեն հասարակության կարիքներին, աշխատավորների, նրանց կազմակերպությունների և կոլեկտիվների շահերին։ Օրենսդրությունը նորացնելիս պետք է խստիվ հետևել այս սկզբունքին, թույլատրելի է այն ամենը, ինչ արգելված չէ օրենքով։

9. Սոցիալիզմի քաղաքական սիստեմը չի կարող լիարյուն կերպով գործել առանց հասարակական կազմակերպությունների լայն ցանցի վրա հենվելու, որոնց միջոցով արտահայտվում և իրագործվում են երկրի բնակչության սոցիալական, մասնագիտական, տարիքային տարբեր խմբերի շահերը։

Արհմիությունները, կոմերիտմիությունը, կոոպերացիան, մյուս հասարակական կազմակերպությունները, գիտական միավորումներն ու ստեղծագործական միությունները կոչված են ակտիվորեն մասնակցելու վերակառուցման բոլոր պրոցեսներին և իրենք էլ վերակառուցվելու, նորովի իմաստավորելով իրենց դիրքորոշումը և դերը, նոր պայմաններում առավել լրիվ բացահայտելու իրենց հնարավորությունները։

Վերակառուցման ընթացքում առաջացան նոր միավորումներ՝ կանանց և վետերանների կազմակերպություններ, մշակույթի սովետական ֆոնդ և մանկական ֆոնդ, հասարակական ինքնագործունեության բազմաթիվ մարմիններ։ Դրանք ծնունդ են առել աշխատավորների հայրենասիրական զգացմունքներից, հասարակության հեղափոխական վերակառուցման գործում անմիջական ավանդ ներդնելու, հայրենական և համաշխարհային մշակույթի արժեքներին հաղորդակցվելու հնարավորություններն ընդլայնելու, մեր ժողովրդի կյանքի բարելավմանը, բնության և պատմական հուշարձանների պահպանությանը նպաստելու նրանց ձգտումից։

Դրա հետ մեկտեղ անկարելի է չտեսնել, որ հասարակական կազմակեր-



պությունների գործունեության մեջ բնավ էլ արմատախիլ չեն արվել ձևամոլությունն ու բյուրոկրատիզմը։ Տեղ են գտնում նաև նրանց ինքնուրույնությունը սահմանափակելու, նրանց հրամայելու փորձեր։ Ի վնաս ինքնագործ հիմունքների զարգացման, թույլ է տրվում հասարակական կազմակերպությունների պետականացում, շարունակվում է դրանց հաստիքային ապարատի ուռճացման գիծը։

Իրենց՝ աշխատավորների ինքնուրույն ստեղծագործական մասնակցություն, նախաձեռնության ու ինքնակառավարման զարգացում՝ ահա հասարակական կազմակերպությունների կատարելագործման հիմնական ուղին։ Հասարակական կազմակերպությունների ներսում դեմոկրատիայի զարգացմանը զուգընթաց հարկավոր է միջոցներ խորհել բարձրացնելու դրանց դերը քաղաքական պրոցեսի մեջ։ Նրանք պետք է ռեալ կերպով օգտագործեն օրենսդրական նախաձեռնության իրավունքը, ներկայացուցչություն ունենան իշխանության մարմիններում, պետության պարտնյորները լինեն սոցիալական ծրագրերի իրագործման, բնակարանային շինարարության ու առողջապահության, աշխատանքի, սոցիալական ապահովության, ուսման, հանգստի, բարեկարգման, առևտրի, կենցաղի և այլ պրոբլեմների լուծման գործում։

Անհրաժեշտություն է առաջանում մոտ ժամանակներս սահմանելու հասարակական կազմակերպությունների, կամավոր ընկերությունների ու ինքնագործ միավորումների գործունեության իրավական հիմքը։ Ընդսմին քաղաքական չափանիշը մեկն է՝ ճանաչման է արժանի ցանկացած հասարակական գործունեությունը, որը գտնվում է սահմանադրության շրջանակներում և չի հակասում սովետական սոցիալիստական հասարակության զարգացման շահերին։

10. ՍՍՀՄ-ում վերակառուցումը դարձել է համաշխարհային նշանակության գործոն։ Օժտված լինելով աշխարհի վրա դրական ներգործության ներքին ուժով, վերակառուցումը կարիք ուներ այնպիսի արտաքին քաղաքականության, որը նույնականորեն արտահայտեր նրա հումանիստական էությունը, պահանջեր մեր միջազգային կապերի դեմոկրատացում, երկրի այլ վիճակ աշխատանքի համաշխարհային բաժանման մեջ։

Անցյալի քննադատական վերլուծությունը ցույց է տվել, որ մեր արտաքին քաղաքականության վրա ևս կնիք են դրել դոգմատիզմը, սուբյեկտիվիստական մոտեցումը։ Արտաքին քաղաքականությունը հետ էր մնացել աշխարհում կատարված հիմնարար փոփոխություններից, նոր հնարավորությունները լիովին չէին իրացվում լարվածությունը թուլացնելու և ժողովուրդների միջև ավելի մեծ փոխըմբռնման հասնելու համար։

Զգտելով ռազմաստրատեգիական զուգակշռության, անցյալում միշտ չէ, որ օգտագործել ենք պետության անվտանգությունը քաղաքական միջոցներով ապահովելու հնարավորությունները և դրա հետևանքով թույլ ենք տվել մեզ ներքաշելու սպառազինությունների մրցավազքի մեջ, ինչը չէր կարող չազդել երկրի սոցիալ-տնտեսական զարգացման և նրա միջազգային դրության վրա։

Արտաքին քաղաքականության հիմքում դրվեց հետևողականորեն գիտական նոր մտածողությունը, որը ձերբազատված է պատմականորեն իրենց դարն ապրած ստերեոտիպերից։ Նոր մտածողությունը արտացոլեց ժամանակակից աշխարհի՝ բազմակերպ, հակասական աշխարհի իրողությունները, մարդկային ցեղի բուն գոյությանը սպառնացող գլոբալ վտանգներով և դրա հետ միասին՝ գոյակցության, համագործակցության, սուր պրոբլեմները քաղաքական միջոցներով լուծելու իր հսկայական պոտենցիալով։

Քաղաքական նոր մտածողությունը հնարավորություն ընձեռեց առաջ քաշել մի շարք խոշոր գաղափարներ, որոնք համակել են անհանգստացած աշխարհի երևակայությունը։ Դրանցից գլխավորներն են՝ միջուկային զենքը մինչև 2000 թվականը փուլ առ փուլ վերացնելու ծրագիրը, համապարփակ անվտանգության համակարգը, ընտրություն կատարելու ազատությունը, շահերի համակշիռը, «համաեվրոպական տունը», հարաբերությունների վերակառուցումը ասիա-խաղաղօվկիանոսյան ռեգիոնում, պաշտպանական բավարար քանակը և անհարձակողական դոկտրինան, միջազգային տնտեսական անվտանգությունը, ազգային և ռեգիոնալ անվտանգության ամրապնդումը սպառազինությունների մակարդակի իջեցման ուղիներում, ուրիշի տերիտորիաներում



digitised by A.R.A.R.@

օտարերկրյա զորքերի ու բազաների ներկայության փոխադարձ դադարեցման պատրաստակամությունը, վստահության միջոցառումները, համաշխարհային քաղաքականության մեջ գիտության հեղինակության անմիջական ընդգրկման գաղափարը։

Այսպիսին է մեր արտաքին քաղաքականության հավատամքը։ Մենք այն հռչակել ենք՝ ոչ ոքի չպարտադրելով ոչ մի պայման ու դոգմա, այլ բոլորին հրավիրելով համատեղ մտորումների ու որոնումների, հաշվի առնելով ազգային ու համամարդկային շահերը։

Զինաթափման բնագավառում մենք առաջարկել ենք հեռագնաց վճիռներ, հանդես ենք բերել խոր փոխզիջումների պատրաստակամություն։ Դա հնարավոր դարձրեց համաշխարհային քաղաքականության մեջ կատարելու այնպիսի խոշոր ճեղքումներ, ինչպիսիք են Ժնևը և հատկապես Ռեյկյավիկը, որոնք ռեալ ընթացք տվեցին բանակցությունների պրոցեսին և էապես ազդեցին ամբողջ միջազգային կլիմայի վրա։

Արմատապես փոխվել է մեր արտաքին քաղաքական գործունեության ամբողջ ոճը։ Նրա բնորոշ գիծն է դարձել երկխոսությունը։ Արտաքին աշխարհի հետ, սկսած պետությունների ղեկավարներից մինչև հասարակ քաղաքացիներ, սովետական ղեկավարության մակարդակի կոնտակտներով աննախադեպ հագեցվածությունն ըստ էության նշանակեց Սովետական Միության «նոր հայտնագործում», իսկ մեզ համար՝ հետադարձ կապ, աշխարհն ավելի լավ ճանաչելու ու հասկանալու և մեր քաղաքականությունը համապատասխան ձևով կառուցելու, քաղաքակիրթ միջազգային հարաբերությունների արդիական ձևավորմանն աջակցելու հնարավորություն։

Առաջնային ուղղությունում՝ սոցիալիստական երկրների հետ ունեցած հարաբերություններում, մենք բարեկամների հետ միասին ընկերաբար ձեռնամուխ եղանք ձևամոլության ու հանդիսամոլության շերտանստվածքների մաքրմանը, իրավահավասարության, ինքնուրույնության, չմիջամտելու սկզբունքները գործնականում շաղկապեցինք օբյեկտիվ իրողության՝ սոցիալիստական հասարակության ազգային ձևերի բազմազանության հետ։ Մեր ինտերնացիոնալ կապերը կառուցվում են փոխադարձ օգուտի, շահերի հաշվեկշռի հիմքի վրա, սոցիալիզմի բախտի ու հեղինակության համար, համաշխարհային զարգացման մեջ նրա դերի բարձրացման համար ընդհանուր պատասխանատվության վրա։

Վերակառուցման տարիներին հարաբերությունները բարելավվել կամ առաջին անգամ հաստատվել են հարևան և շատ հեռավոր մեծ թվով պետությունների հետ։ Եվ հարաբերությունները չեն վատացել նրանցից ոչ մեկի հետ։

Նորովի են դասավորվել փոխհարաբերությունները համաշխարհային պրոցեսը ձևավորող այնպիսի ազդեցիկ ուժերի հետ, ինչպիսիք են կոմունիստական, սոցիալ-դեմոկրատական, մյուս քաղաքական կուսակցությունները, չմիանալու շարժումը, գիտության, մշակույթի հեղինակությունը մարմնավորող ինտելեկտուալ շրջանները։

Իրադարձությունները ցույց տվեցին, որ նոր քաղաքական մտածողությունը ճիշտ է արտացոլել ժամանակակից աշխարհի հասունացած պահանջմունքներն ու իմպերատիվները։ Այդ մտածողությունը վերածնեց հույսը, բացեց դեպի մարդկության գիտակցության մեջ որակական բեկում տանող ուղին, մեծացնում է համաշխարհային հասարակական կարծիքի ռեալ կշիռը։

Միջազգային քաղաքականության մեջ նոր մտածողության ընդգրկումը նշանավորվեց պրակտիկ խոշոր արդյունքներով՝ կնքվեց միջին ու փոքր հեռահարության հրթիռները վերացնելու պայմանագիրը։ Սկսվել է Աֆղանստանից զորքերի դուրս բերումը Ժնևի համաձայնագրերի հիման վրա։

Սովետա-ամերիկյան հարաբերությունների որոշակի բարելավումը, որի խորհրդանիշն են դարձել բարձր մակարդակի հանդիպումները, հնարավորություն են ընձեռում հույս տածելու, որ սկզբունքային շրջադարձ կկատարվի դեպի միջուկային սպառնալիքի վերացում։ Մեր կողմից ակտիվորեն խթանվող բազմակողմ բանակցությունների պրոցեսը մոտեցնում է քիմիական զենքի արգելումը, հնարավորություն է բացում թուլացնելու վտանգավոր դիմակայությունը երկու ամենահզոր ռազմական դաշինքների՝ ՆԱՏՕ-ի և Վարշավայի



պայմանագրի կազմակերպության միջև, Եվրոպայում կրճատելու սովորական սպառազինություններն ու զինված ուժերը։

Մենք աչքաթող չենք անում իմպերիալիզմի բնույթի մեջ թաքնված միլիտարիստական վտանգը։ Դրանով է որոշվում սովետական պաշտպանական շինարարությունը, որի արդյունավետությունն այսուհետև պետք է ինչպես տեխնիկայի, այնպես էլ անձնակազմի առումով գերազանցապես ապահովվի որակական պարամետրերով։ Ժամանակակից աշխարհի իրողությունների ներգործությունը և պատերազմներ ծնած մի շարք օբյեկտիվ գործոնների հնարավոր մոդիֆիկացիաները թույլ են տալիս մտածել, որ պետությունների անվտանգության ապահովումը ռազմական պոտենցիալների հարաբերակցության ոլորտից ավելի ու ավելի մեծ չափով կտեղափոխվի քաղաքականության ոլորտ, իրավունքի առաջնության, միջազգային պարտավորությունների կատարման մեջ համամարդկային բարոյականության ոլորտ։

Արմատական տնտեսական ռեֆորմը և արտաքին քաղաքական կապերի նկատմամբ նոր մոտեցումը տվել են երկիրը համաշխարհային տնտեսության մեջ ավելի արդյունավետորեն ընդգրկելու առաջին ընձյուղները։

Մեր ժողովրդին և աշխարհի բոլոր ժողովուրդներին ամենից շատ անհանգստացնող այն գլխավոր հարցին, թե արդյոք հաջողվե՞լ է վանել պատերազմի սպառնալիքը, ըստ վերակառուցման երեք տարվա արդյունքների կարելի է պատասխանել. այո, անշուշտ։ Խոշոր տերությունների մասնակցությամբ պատերազմի ուղղակի սպառնալիքը նվազել է։ Սովետական Միության միջազգային դրությունը նկատելիորեն լավացել է, և ոչ թե ուժի մեծացման հաշվին, այլ մեր երկրի նկատմամբ վստահության բարձրացման հաշվին։ Աշխարհի իրավիճակը ձեռք է բերել ավելի մեծ կայունություն և կանխագուշակելիություն։ Սպառազինությունների մրցավազքի սանձահարման հեռանկարը, դրա բոլոր հետևանքներով հանդերձ, ներառյալ ռազմական ծախսերի բեռի կրճատումը, դարձել է ավելի ռեալ։

Հնարավորություն է բացվում առաջվանից ավելի լայն սոցիալական ու քաղաքական հիման վրա դիմագրավել խաղաղությանն սպառնացող վտանգը, հող ստեղծել մարդկության գլոբալ պրոբլեմները համաշխարհային հանրության համատեղ ջանքերով լուծելու համար։ ՍՄԿԿ-ն ակտիվորեն ու հաստատակամորեն կգործի հանուն այդ նպատակների։

Գաղափարաքաղաքական, տնտեսական ու սոցիալական բնագավառներում կյանքի հեղափոխական վերակառուցման, դեմոկրատացման միջով, քաղաքական սիստեմի վերափոխման միջով է անցնում դեպի սովետական հասարակության որակապես նոր վիճակ, դեպի սոցիալիզմի նոր նկարագիր տանող ուղին։

Հարկավոր է իրենց նշանակության ողջ խորությամբ վերածնել գիտական սոցիալիզմի սկզբունքները, որտեղ մարդը ոչ թե խոսքով, այլ գործով է դառնում նյութական ու հոգևոր զարգացման գլխավոր գործոնը, նրա ինքնանպատակը։

Կուսակցությունն իր քաղաքականությունը կկառուցի՝ հստակորեն կողմնորոշվելով դեպի սոցիալիզմի մարդասիրական սկզբունքներն ու նպատակները և կձգտի այդ քաղաքականությունն իրագործել մարդասիրական, դեմոկրատական միջոցներով։

Անշուշտ, կենդանի իրականությունը, հասարակական զարգացման դիալեկտիկան նոր քիչ բան չեն մտցնի սոցիալիստական վերափոխումների ուղիների վերաբերյալ այսօրվա պատկերացումների մեջ, թույլ կտան ճշգրտել և հարստացնել դրանք։ Մի շարք հարցերի առթիվ հարկ կլինի փոփոխություններ մտցնել ՍՍՀՄ սահմանադրության և օրենսդրության մեջ, որոշ վճիռներ կայացնել կուսակցության համագումարի մակարդակում։

Շարադրված նկատառումները քննարկման դնելով, ՍՄԿԿ Կենտկոմը հույս ունի, որ կոմունիստները, բոլոր աշխատավորները ակտիվորեն կմասնակցեն դրան։ Դա XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսին հնարավորություն կընձեռի ընդունել այնպիսի կշռադատված որոշումներ, որոնց իրագործումը կարագացնի վճռական առաջընթացը և անշրջելի կդարձնի հեղափոխական վերակառուցումը։

---

digitised by A.R.A.R.@

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

**1988 թվականի մայիսի 21-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենում, որը քննարկեց կազմակերպական հարց:**

**Պլենումը ընկ. Կ. Ս. Դեմիրճյանին ազատեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղարի և Կենտկոմի բյուրոյի անդամի պարտականություններից՝ առողջական վիճակի պատճառով կենսաթոշակի անցնելու կապակցությամբ:**

**Պլենումը Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընտրեց ընկ. Ս. Գ. Հարությունյանին, որը աշխատում էր որպես Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ, իսկ մինչ այդ՝ որպես ՍՄԿԿ Կենտկոմի պրոպագանդայի բաժնի սեկտորի վարիչ:**

**Պլենումում հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Գ. Հարությունյանը:**

**Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցեցին ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Ա. Ն. Յակովլևը և ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Վ. Ի. Դոլգիխը:**

**Պլենումում հանդես եկավ ընկ. Ա. Ն. Յակովլևը:**

---

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ ՍՈՒՐԵՆ ԳՈՒՐԳԵՆԻ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Ծնվել է 1939 թվականի սեպտեմբերի
5-ին Թբիլիսիում, ծառայողի ընտանիքում,
ազգությունը՝ հայ: ՍՄԿԿ անդամ է 1961
թվականից՝ կրթությունը՝ բարձրագույն:
1961 թվականին ավարտել է Երևանի ա-
նասնաբուծական-անասնաբուժական ինս-
տիտուտը: 1979 թվականին Վ. Ի. Լենինի
անվան ռազմա-քաղաքական ակադեմիա-
յում պաշտպանել է դիսերտացիա, նրան
շնորհվել է փիլիսոփայական գիտություն-
ների թեկնածուի գիտական աստիճան:

Ինստիտուտն ավարտելուց հետո ընկ.
Ս. Գ. Հարությունյանը նշանակում է ստա-
ցել Հայկական ՍՍՀ Արտաշատի շրջանի
Մխչյանի պետական տոհմաբուծարանում,
որտեղ աշխատել է որպես տեսուչ-զոո-
տեխնիկ:

1962 թվականից ընկ. Ս. Գ. Հարություն-
յանը կոմերիտական աշխատանքում է.
եղել է Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմի հրա-
հանգիչ, 1963—1965 թթ.՝ ՀամԼԿԵՄ Կենտ-
կոմի պատասխանատու աշխատող: 1965
թվականից ընկ. Ս. Գ. Հարությունյանը
Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմի երկրորդ,
իսկ 1967 թվականից՝ առաջին քարտու-
ղար էր: 1970-ին նա ընտրվում է ՀամԼԿԵՄ
Կենտկոմի քարտուղար և Կենտկոմի բյու-
րոյի անդամ:

1978 թվականին ընկ. Ս. Գ. Հարու-
թյունյանը աշխատանքի է առաջ քաշվում
ՍՄԿԿ Կենտկոմի ապարատում. եղել է
կոնսուլտանտ, իսկ 1981 թվականից՝ Կենտ-
կոմի պրոպագանդայի բաժնի սեկտորի
վարիչ:

1986 թվականի հունվարից նա Հայկա-
կան ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախա-
գահի առաջին տեղակալն էր:

1967 թվականին ընկ. Ս. Գ. Հարություն-
յանը ընտրվել է Հայաստանի կոմկուսի
Կենտկոմի անդամ և Կենտկոմի բյուրոյի
անդամության թեկնածու:

Ընկ. Ս. Գ. Հարությունյանը Հայկական
ՍՍՀ յոթերորդ և տասնմեկերորդ գումա-
րումների Գերագույն սովետի դեպուտատ
է: Պարգևատրվել է Ժողովուրդների բարե-
կամության շքանշանով, «Պատվո նշան»
երեք շքանշանով, մեդալներով:

---

digitised by A.R.A.R.@

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

**1988 թվականի մայիսի 31-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը:**

**Պլենումը քննության առավ «Հայաստանի կոմկուսից XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի պատգամավորների ընտրությունների մասին» հարցը:**

**Պլենումում գործարար խոսակցություն տեղի ունեցավ ներկայացված թեկնածությունների շուրջ: Նշվեց, որ սկզբնական կուսակցական կազմակերպություններում, աշխատավորական կոլեկտիվներում պատգամավորության թեկնածուների առաջադրումը անցավ սկզբունքայնության, կարծիքների անկեղծ փոխանակման մթնոլորտում: Քննարկվեցին հազարից ավելի թեկնածություններ: Կուսակցական կոմիտեները առաջադրված թեկնածությունների բազմակողմանի քննարկումից հետո Հայաստանի կոմկուսի Կենտկոմին ներկայացրին իրենց առաջարկությունները:**

**Դրա հետ մեկտեղ, ինչպես նշվեց Կենտկոմի պլենումում, պատգամավորության թեկնածուներ առաջադրելիս տեղ են գտել ձևականության և կազմակերպամոլության փաստեր:**

**Փակ (գաղտնի) քվեարկության արդյունքներով ընտրվեց XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի 51 պատգամավոր: Ընտրված պատգամավորները ամբողջությամբ վերցրած արտացոլում են հանրապետական կուսակցական կազմակերպության սոցիալական կազմը: Գրեթե մեկ երրորդ մասը արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, կապի աշխատողներ են: Լայնորեն են ներկայացված գիտության, մշակույթի, լուսավորության աշխատողները:**

**Պլենումում վստահություն հայտնվեց, որ Հայաստանի կոմունիստների պատվիրակները հանրապետական կուսակցական կազմակերպությունը ըստ արժանվույն կներկայացնեն առաջիկա XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսում:**

**Պլենումում հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԸ:**

**Պլենումի աշխատանքին մասնակցում էին ՍՄԿԿ Կենտկոմի անդամ, ՍՍՀՄ կապի մինիստր Վ. Ա. ՇԱՄՇԻՆԸ, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի մեխանիկայի պրոբլեմների ինստիտուտի դիրեկտոր, գիտական և ինժեներական ընկերությունների միության վարչության նախագահ Ա. Յու. ԻՇԼԻՆՍԿԻՆ, ՍՄԿԿ Կենտկոմի պատասխանատու աշխատող Վ. ՅԱ. ԳԵՐԱՍԻՄԵՆԿՈՆ:**



# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՆՈՐԱՑՄԱՆ ՇԱՐԺԻՉ ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**Ց. ՍՏԵՓԱՆՅԱՆ**

ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆԸ ԱՄԵՆ ՄԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ արմատն ու համապարփակ ակունքն է: Հեգելի դիալեկտիկայի այդ ռացիոնալ հատիկը մատերիալիստական հիման վրա վերամշակել ու խորապես զարգացրել են Մարքսը և Էնգելսը: Այդ արմատական մեթոդի հիման վրա է ստեղծվել կապիտալիստական հասարակությունը կոմունիստականի փոխարկվելու ողջ մարքսիստական կոնցեպցիան: Հետագայում արդի հասարակության համակողմանի ճանաչման և հեղափոխական վերակառուցման վերաբերյալ այդ դիալեկտիկամատերիալիստական ուսմունքը նոր պայմաններում զարգացրեց Վ. Ի. Լենինը: Մարքսն ու Էնգելսը, ելնելով XIX դարի երկրորդ կեսի հասարակական զարգացման պահանջմունքներից, շեշտը դրեցին արդյունաբերական կապիտալիզմի դարաշրջանի հակամարտ հակասությունները խորապես բացահայտելու վրա: Դրանով իսկ նրանք հիմնավորեցին սոցիալիստական հեղափոխության անխուսափելիությունը և պրոլետարիատի դիկտատուրայի՝ որպես նոր հասարակության ստեղծման հիմնական միջոցի, հաստատումը:

Վ. Ի. Լենինը XX դարի սկզբից ևեթ շարունակելով այդ գլխավոր գիծը, հատուկ ուշադրություն դարձրեց իմպերիալիզմի ամենակարևոր հակասությունները բացահայտելուն և հիմնավորեց սոցիալիստական հեղափոխությունն անմիջականորեն իրականացնելիս դրանց լուծման ուղիները: Մարքսիզմ-լենինիզմի ամուր հիմքի վրա բոլշևիկյան կուսակցությունը պատմական կարճ ժամկետում կազմակերպեց և իրականացրեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը: Մեծ Հոկտեմբերը աշխարհը ճեղքեց երկու հիմնական սիստեմների և ճանապարհ բացեց դեպի կոմունիզմ:

Վ. Ի. Լենինին է պատկանում իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանի կարևորագույն հակասությունների և, ամենից առաջ, երկու հիմնական՝ արտաքին և ներքին, հակասությունների բացահայտման առաջնությունը: Այս ճշմարտությունն է վկայում մեր դարաշրջանի իրական պատմությունը:

Առաջին անգամ մարքսիզմի դասականները ոչ միայն առաջադրեցին կոմունիստական ֆորմացիայի առաջացման անխուսափելիության գաղափարը, այլև ընդհանուր ձևով կանխագուշակեցին նոր հասարակարգի հիմնական շարժիչ հակասությունը: Դեռևս գիտական կոմունիզմի առաջացման նախնական շրջանում Ֆ. Էնգելսը գրում էր, որ հասարակության կոմունիստական վերափոխման գլխավոր նպատակն է հասարակության **բոլոր** անդամների համար ապահովել գոյության ոչ միայն միանգամայն բավարար և օրավուր բարելավվող նյութական միջոցներ, այլ նաև լիովին ազատ զարգացում և նրանց ֆիզիկական ու հոգևոր կարողությունների կիրառում:

Նոր հասարակարգի զարգացման գործում կարևորագույն շարժիչ հակասությունների մասին ավելի մանրամասնորեն ու կոնկրետ գրել և խոսել է Վ. Ի. Լենինը

---

ՍՏԵՓԱՆՅԱՆ ՑՈԼԱԿ ԱԼԵՔՍԱՆԴՐԻ — ՍՍՀՄ ԳԱ թղթակից անդամ, ՍՍՀՄ ԳԱ փիլիսոփայության ինստիտուտի գիտական կոմունիզմի բաժնի վարիչ:



digitised by A.R.A.R.@

կոմունիստական ֆորմացիայի լինելության սկիզբը դրած մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո: Անցման շրջանի գլխավոր ներքին հակասությունը նա համարում էր առաջացող սոցիալիզմի և տապալված, բայց դեռևս լիովին չոչնչացված կապիտալիզմի միջև եղած հակամարտությունը: Այդ գաղափարը Լենինը համառոտ և նոր հասարակություն կառուցող միլիոնավոր մարդկանց համար ծայր աստիճան նշանակալիորեն ձևակերպեց «ով՝ ում» բանաձևով:

Այդ հակասությունը լուծելու համար Լենինն ու կուսակցությունը մշակեցին երկրի ինդուստրացման, մանրապրանքային տնտեսության կոոպերացման զանազան ձևերի իրականացման, կուլտուրական հեղափոխության անցկացման, ազգային հարցի լուծման միջոցով սոցիալիզմի շինարարության գիտականորեն հիմնավորված ծրագիր:

Խորհրդածելով ապագայի մասին՝ Վ. Ի. Լենինը զգուշացնում էր հակամարտությունը չշփոթել առհասարակ ամեն մի զարգացման հիմնական աղբյուր հանդիսացող հակասությունների հետ: Բացահայտելով անցման շրջանի պրոբլեմների վերաբերյալ Ն. Ի. Բուխարինի ոչ դիալեկտիկական մոտեցումը՝ Վ. Ի. Լենինը նրա գրքի վերաբերյալ արեց սկզբունքային բնույթի հետևյալ դիտողությունը. «Հակամարտությունը և հակասությունը ամենևին էլ միևնույնը չեն: Առաջինը կանհետանա, երկրորդը կմնա սոցիալիզմի օրոք» (Ленинский сборник XI, стр. 357):

Վ. Ի. Լենինի այս դրույթը միշտ չէ, որ հիմնավորապես հաշվի է առնվել սոցիալիստական շինարարության կարևորագույն պրոբլեմները լուծելիս: Անհատի պաշտամունքի պայմաններում հակամարտ և ոչ հակամարտ հակասությունների շփոթումը տեղի է ունեցել գյուղատնտեսության կոլեկտիվացման ընթացքում թույլ տրված ծայրահեղ խոտորումներում, հաղթանակած սոցիալիզմի պայմաններում դասակարգային պայքարի սրման վերաբերյալ պնդումներում, 1937 և 1938 թթ. անօրինական ռեպրեսիաների փաստերում և այլն: Մյուս կողմից, ոչ հակամարտ ներքին հակասությունները հակամարտ արտաքին հակասություններից լիովին խզելը որոշակի անհոգություն էր ծնում սոցիալիզմի առաջին երկրի զարգացման տեմպերի ըմբռնման, ժամանակին սովետական պետության տնտեսական և պաշտպանական պատշաճ հզորության ստեղծման հարցերում:

Վ. Ի. Լենինը հիմնական արտաքին հակասությունը համարում էր աշխարհը երկու սիստեմների ճեղքելը, հակասությունը սոցիալիզմի և կապիտալիզմի միջև: Երկու սիստեմների այդ հակասությունից նա եզրակացություն էր անում սոցիալիզմի և կապիտալիզմի խաղաղ գոյակցության և մրցակցության անհրաժեշտության մասին: Մերժելով համաշխարհային հեղափոխությունն առաջ մղելու վերաբերյալ տրոցկիզմի արկածախնդրային դրույթը, Լենինն ուսուցանում էր, որ համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման ընթացքի վրա գլխավոր ազդեցությունը մենք պետք է գործենք ոչ թե հեղափոխության արտահանման, այլ սոցիալիզմի առավելությունները համակողմանիորեն բացահայտելու միջոցով: Լենինյան այս հիմնարար գաղափարները սովետական արտաքին քաղաքականության հիմքն են կազմում: ՍՄԿԿ XXVII համագումարը, զարգացնելով և կոնկրետացնելով դրանք, շեշտեց, որ մենք ապրում ենք հակասական, բայց փոխկապակցված ու ամբողջական աշխարհում: Այս կոնցեպցիայից միջուկային դարաշրջանում հետևում է նոր քաղաքական մտածողություն, որը բոլոր ժողովուրդներից ու պետություններից (անկախ այն բանից, թե սոցիալական որ սիստեմին են նրանք պատկանում) պահանջում է համատեղ պայքարել հանուն մարդկության գոյատևման, համաշխարհային քաղաքակրթության պահպանման ու հետագա զարգացման:

Արդի պրոբլեմների շարքում հատուկ նշանակություն ունի դասակարգայինի և համամարդկայինի հարաբերակցությունը ճիշտ որոշելը, առանց որի չի կարելի խորապես յուրացնել էությունն այն քաղաքական մտածողության, որ կիրառում է կուսակցությունը ներքին և առաջ արտաքին քաղաքականության բնագավառում: Այդ պրոբլեմը, որն այժմ մղված է առաջին պլան, բխում է հասարակական զարգացման դիալեկտիկամատերիալիստական ըմբռնումից, որը հանճարեղ կերպով կանխատեսել են մարքսիզմ-լենինիզմի դասականները:

Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը մատնանշել են, որ սոցիալական առաջընթացը, արդարացի հիման վրա աշխարհի վերակառուցման համար մղվող պայքարը ոչ թե միայն բանվորների, այլ ողջ մարդկության գործն է: Այնուհետև, հանուն սոցիալական առաջընթացի պայքարում Կ. Մարքսը կոչ էր անում «հասնել այն բանին, որպեսզի բարոյականության ու արդարության պարզ օրենքները, որոնցով մասնավոր անձինք



պետք է ղեկավարվեն իրենց փոխհարաբերություններում, դառնան բարձրագույն օրենքներ նաև ժողովուրդների հարաբերություններում» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 6, стр. 11): Այդ ոգով էլ այս հարցերը զարգացրել է Վ. Ի. Լենինը, որն իր հեղափոխական գործունեության առաջին իսկ օրերից սկսած շեշտում էր մնացած բոլոր հարցերի նկատմամբ հասարակական առաջընթացի գերակայությունը:

Նոր քաղաքական մտածողությունը, որն արտացոլում է համաշխարհային զարգացման արդի դարաշրջանը, պահանջում է դասակարգային, համամարդկային, գլոբալ մոտեցումների դիալեկտիկական համադրում: Նման համակողմանի մոտեցումը ենթադրում է յուրաքանչյուր հասարակարգի գլխավոր հիմքերի պահպանումը՝ հնարավոր համարելով կոմպրոմիսի գնալ առանձին քաղաքական, տնտեսական և ռազմական պրոբլեմների շուրջը: Նման դիալեկտիկական մոտեցման վառ օրինակ են միջուկային սպառազինության կրճատման շուրջ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև կայացած բանակցությունների դրական արդյունքները:

Նոր մտածողության այդ պահանջներն ամրապնդում են հանուն խաղաղության պայքարող բոլոր առաջադիմական ուժերի դիրքերը: Նոր մտածողության հանդեպ վախը կապիտալիզմի պաշտպանների և կոմունիզմի հակառակորդների պահպանողականության վկայություն է: Դրանում դրսևորվում է կապիտալիզմի թուլությունը, նրա գաղափարախոսների՝ ամեն գնով կոմունիզմը զրպարտելու ձգտումը:

Մեր գաղափարախոսական հակառակորդները, ձգտելով հավերժացնել կապիտալիզմը, ամեն կերպ ուռճացնում են սոցիալիզմի օրոք տեղ գտած առանձին սխալներն ու բացասական երևույթները՝ նպատակ ունենալով ապացուցել նոր հասարակարգի անկենսունակությունը: Ավելին, հակակոմունիզմի գաղափարախոսները սոցիալիզմի օրոք անցկացվող բոլոր ձեռնարկումներում ճգնում են գտնել կապիտալիզմի գծեր, դրանով իսկ մխիթարելով իրենց և համոզելով ուրիշներին այն բանում, որ կապիտալիզմից զատ այլ հասարակարգ լինել չի կարող: Բայց հասարակությունը զարգանում է հասարակական-տնտեսական ֆորմացիաների օրինաչափ փոխարինումով: Այդ օբյեկտիվ օրինաչափությունը արդի պայմաններում նոր ձևեր է ընդունում ինչպես ներքին, այնպես էլ արտաքին գլոբալ բնույթի պրոբլեմները լուծելիս:

Նոր պատմական հանգամանքները պահանջում են առավելագույն ստեղծագործական մոտեցում բոլոր հասարակական երևույթների նկատմամբ: Սակայն ամեն մի նոր երևույթ չպետք է վերացնի այն գիտական սկզբունքները, որոնք ուղենիշ են մարդկության գոյատևման և նրա վերընթաց զարգացման հետ կապված հարցերի լուծման համար:

Հենվելով մարքսիզմ-լենինիզմի դասականների աշխատությունների և նոր հասարակարգի ստեղծման պատմական փորձի վրա՝ սովետական հասարակագետները քիչ բան չեն արել սոցիալիստական հասարակության զարգացման հակասությունների պրոբլեմները մշակելու գործում:

Արմատական տեսական պրոբլեմները լուծելիս մենք պետք է միշտ հաշվի առնենք մարքսիզմ-լենինիզմի զարգացման պատմության ողջ դասերը, խորապես մշակենք արդիականության հրատապ պրոբլեմները, կանխատեսենք կոմունիստական ֆորմացիայի զարգացման հեռանկարները: Այս կարծիքն են հայտնում նաև շատ տնտեսագետներ, հատկապես Լ. Ի. Աբալկինն իր հրապարակումներում: Հանդես գալով «Правда»-ի գործնական ակումբի նիստում, նա սոցիալիզմի հիմնական հակասության ոգով նշել է, որ հասարակության իրական պահանջմունքներն անտեսելու հետևանքով մեզանում պահեստները լեփ-լեցուն են ոչ պիտանի արտադրանքով և այն շարունակում են ավելի ու ավելի շատ արտադրել: «Եկեք ծավալային ցուցանիշներից անցնենք հասարակական պահանջմունքների բավարարման աստիճանի ցուցանիշներին»,— նշում է նա («Правда», 27 марта, 1987 г.):

Կ. Մարքսը, Ֆ. Էնգելսը և Վ. Ի. Լենինը երբեք չեն նույնացրել իրենց հայտնաբերած՝ արտադրաուժերի և արտադրահարաբերությունների միջև եղած հիմնական ընդհանուր սոցիոլոգիական հակասությունը այս կամ այն ֆորմացիայի հիմնական հակասության հետ: Մարքսիզմ-լենինիզմի դասականները միշտ շեշտել են, որ կապիտալիզմի հիմնական հակասությունը արտադրության հանրային բնույթի և յուրացման մասնավոր ձևի միջև եղած հակասությունն է: Այս հակասությունը կապված է արտադրաուժերի և արտադրահարաբերությունների միջև եղած ընդհանուր սոցիոլոգիական հիմնական հակասության հետ, բայց դրանք նույնական չեն: Առաջինն անհետանում է կապիտալիզմի ոչնչացման հետ միասին, իսկ երկրորդը շարունակում է գործել նաև կոմունիստական ֆորմացիայի լինելիության պայմաններում:



digitised by A.R.A.R.@

Սոցիալիզմի կատարելագործման արդի փուլը պահանջում է արմատական շըրջադարձ դեպի ժողովրդական զանգվածների աճող պահանջմունքների բավարարումը այնպիսի տնտեսական ռեֆորմի պլանաչափ իրականացման հիման վրա, որն ապահովում է սոցիալիզմի պատմական առավելությունների բացահայտումը՝ ժողովրդի համար և ժողովրդի ձեռքերով նյութական ու կուլտուրական բարիքների բարձր մակարդակ ստեղծելու գործում։ Տնտեսական ռեֆորմի այնպիսի ասպեկտները, ինչպիսիք են հանրային սեփականության հիմքի վրա սոցիալիստական ձեռնարկությունների ինքնուրույնության զարգացումը, տնտհաշվարկը, ինքնածախսածածկումը, ինքնաֆինանսավորումը, կոոպերացիայի զանազան ձևերի, անհատական աշխատանքային գործունեության զարգացումը, մասսաների, բոլոր կոլեկտիվների և յուրաքանչյուր անհատի ստեղծագործական ակտիվության բարձրացումը և այլն, նպատակ են հետապնդում պլանաչափորեն, նպատակասլաց և առավելագույն չափով օգտագործել արդի գիտատեխնիկական հեղափոխության տվյալները՝ բարձրորակ և միևնույն ժամանակ խնայողական արտադրական ապարատ ստեղծելու համար, որն ի վիճակի կլինի բավարարելու ողջ ժողովրդի հարաճուն խելամիտ պահանջմունքները։

Նոր հասարակարգի հիմնական շարժիչ հակասությունը կոչված է ապահովելու արտադրության այնպիսի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, որը, բավարարելով մասսաների աճող պահանջմունքները, կարողանար նախապատրաստել անցումն ըստ աշխատանքի սոցիալիստական բաշխումից ըստ պահանջի կոմունիստական բաշխմանը։ Այդ անցումը կիրականացվի ոչ թե աշխատանքի անհրաժեշտությունը վերացնելու ուղիով (երբեմն պարզունակորեն կարծում են, թե կոմունիզմի օրոք այդպիսի անհրաժեշտությունը կվերանա), այլ բարձրարտադրողական, բարձր կազմակերպված ստեղծագործական աշխատանքի հիման վրա, մի աշխատանք, որը միևնույն ժամանակ կլինի թե՛ ապրելու միջոց, թե՛ առաջին կենսական պահանջմունքը։

Սոցիալիզմը պատմության մեջ առաջին անգամ հռչակում և գործնականում իրականացնում է այն բոլոր իրավունքներն ու ազատությունները, որոնք անհրաժեշտ են անհատի համակողմանի զարգացման համար։ Այդ իրավունքներն ու ազատությունները հնարավորություն ընձեռեցին պատմական կարճ ժամանակամիջոցում իրականացնելու սովետական հասարակության հեղափոխական վերափոխումները, ՍՍՀՄ-ը դարձնելու աշխարհի ամենահզոր սոցիալիստական պետությունը։

Բայց զարգացման դիալեկտիկան ներքուստ հակասական է։ Երաշխավորված իրավունքներն ու ազատություններն ունեն ոչ միայն դրական, այլև, որոշակի պայմաններում բացասական նշանակություն։ Այսպես, աշխատանքի երաշխավորված իրավունքը մարդկանց որոշակի մասի մեջ ծնում է սոցիալական պասսիվություն, բարեհոգություն, անկարգապահություն, ձգտում՝ հասարակությանը տալ քիչ, իսկ վերցնել ավելի շատ։ Ընդ որում չվաստակած փող ստանալու համար օգտագործում են հավելագրումներ, այլ անթույլատրելի մեքենայություններ, որն արմատավորում է հավասարարություն, խարխլում սոցիալիզմի գլխավոր «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սկզբունքը, խախտում աշխատավարձի աճի համեմատ աշխատանքի արտադրողականության առաջանցիկ աճի վերաբերյալ կարևորագույն տնտեսական օրենքը։ Չէ որ դեռևս Վ. Ի. Լենինը 1921 թ. ապրիլի 21-ին ստորագրել է բանվորների աշխատանքի վարձատրման կարգավորման մասին ժողտնտխորհի դեկրետի նախագիծը, որով յուրաքանչյուր ոք ստանալու էր իր ռեալ ներդրմանը համապատասխան, աշխատանքի արտադրողականության աճի համեմատ։

Բոլոր նշված և այլ բացասական երևույթների հաղթահարման համար անհրաժեշտ է կատարել Լենինի պատվիրանը. իրականացնել խստիվ հաշվառում և վերահսկողություն աշխատանքի և սպառման չափի նկատմամբ, պարբերաբար և անշեղորեն բարձրացնել հասարակության բոլոր անդամների սոցիալիստական գիտակցականությունն ու կարգապահությունը։ Սոցիալիզմի զարգացման այդ դիալեկտիկան, նրա ներքին հակասականությունն անհրաժեշտ է դիտարկել նաև հասարակության մյուս՝ ոչ միայն տնտեսական, այլև սոցիալական, հոգևոր ոլորտներում։

Կամ էլ մեկ այլ բնորոշ օրինակ։ 1966 թ. լույս տեսած «Արդի հասարակական զարգացման դիալեկտիկան» գրքում առաջին անգամ մեր գրականության մեջ բացահայտվեցին սոցիալիզմի օրոք ազգային հարաբերությունների զարգացման հակասությունները։ Այս մարզում որևէ հակասության առկայության մասին խոսելն ընդունված չէր։ Սակայն տողերիս հեղինակի գրած «Հակասությունների բացահայտումն ու հաղթահարումը կոմունիստական ֆորմացիայի գոյավորման և զարգացման ընդ-



հանուր օրինաչափություն» բաժնում ասված է. «Այդ միտումների (այսինքն՝ զարգացման և մերձեցման— Ց. Ս.) փոխհարաբերությունն ու փոխներթափանցումը կազմում է այն ոչ հակամարտ դիալեկտիկական հակասությունը, որը հաշվի առնելն ու լուծելը հանդիսանում է ազգությունների ծաղկման ու մերձեցման աղբյուրը կոմունիզմի ճանապարհին։ Ընդհանուր շահերի անտեսումը հանգեցնում է տեղական նացիոնալիզմի, իսկ յուրահատուկ առանձնահատկությունների անտեսումը մեծապետական շովինիզմի» (Диалектика современного общественного развития. М., 1966, стр. 135)։

Իրականում գործող այս հակասությունների անտեսումն այժմ ծնել է մի շարք կոնֆլիկտային իրավիճակներ մեր բազմազգ հայրենիքի առանձին շրջաններում։ Այդ են վկայում իրադարձությունները Ղազախստանում, Անդրկովկասի հանրապետություններում, Մերձբալթիկայում։

Ցանկացած, հատկապես խոշոր տեսական ու գործնական պրոբլեմի ճիշտ լուծումը պահանջում է հարցի պատմության իմացություն։ Այդ դեպքում, առանց նորից բացելու վաղուց ուսումնասիրածը, կարելի է շարժվել առաջ, սոցիալիզմի զարգացման դիալեկտիկայի առավել խորն ու համակողմանի օգտագործման ուղիով։

Մեր, ինչպես և եղբայրական մյուս երկրներում սոցիալիզմի նորացման ընթացքում բացահայտվեց հակասություն սոցիալիզմի միասնական բնույթի բացահայտման և նրա դրսևորման ձևերի բազմազանության միջև։

Օրգանապես զուգակցել սոցիալիզմի միասնական և անխախտ սկզբունքները նրա աճող բազմազանության հետ՝ այսպիսին է հասարակության կյանքի բոլոր կողմերի հեղափոխական նորացման խնդիրը։ Սոցիալիզմի հիմքերի միասնության և դրա դրսևորման ձևերի բազմազանության միջև հակասության հաղթահարման համար պահանջվում է կադրերի գաղափարախոսական կոփման բարձր մակարդակ։ Այլապես անխուսափելի են, մի կողմից, ծայրահեղ դոգմատիզմը և, մյուս կողմից՝ սոցիալիզմը քայքայելու բազմաթիվ ձգտումները, այն դեպի հետ, հասարակական կյանքի ու գաղափարախոսության հին ձևերը տանող ուղի փոխադրելու ձգտումը։

Վերակառուցման ընթացքում առաջանում են նոր դիալեկտիկական հակասություններ, որոնք ժամանակին բացահայտելուց ու հաղթահարելուց են կախված սոցիալիստական հասարակության հեղափոխական նորացումը, նրա նոր որակական վիճակի ձեռքբերումը։ Նման հակասության օրինակ է ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումի բացահայտած դպրոցական ռեֆորմի էվոլյուցիոն բնույթը, որը չի համապատասխանում հասարակության վերակառուցման հեղափոխական էությանը։ Մասնավորապես դա արտացոլվել է տեխնոլոգիայի համաշխարհային մակարդակ ապահովող արդի գիտատեխնիկական հեղափոխության համակողմանի զարգացման և համապատասխան մասնագետների պատրաստման բացահայտ հետ մնալու փաստում։ Այդ հետզհետե սաստկացող հակասության հաղթահարման ճիշտ ուղին կարճ ժամանակամիջոցում կրթության բոլոր ձևերի դանդաղող զարգացման միտումը բեկելն է, արդի համաշխարհային գիտատեխնիկական հեղափոխությունը գիտակցելու ունակ անհրաժեշտ մասնագետների պատրաստումն արագացնելը։

Հիրավի, դիալեկտիկական հակասական բնույթ է կրում կոոպերատիվ շարժման ծագումն ու զարգացումը, որն առաջացել է դեռևս հին հասարակության ընդերքում, ունի հսկայական նշանակություն կոմունիստական ֆորմացիայի դիալեկտիկայի օրինաչափությունները ճանաչելու համար։ Այս հարցի վերաբերյալ Լենինի գաղափարական ժառանգությունը հսկայական է։ Դեռևս 1958 թվականին ՍՍՀՄ ԳԱ գիտական կոմունիզմի բաժինը պատրաստեց «Սոցիալիզմի երկրների համագործակցությունը» կոլեկտիվ աշխատությունը։ Այդ գրքում ուշադրություն դարձվեց կապիտալիզմի և սոցիալիզմի օրոք եղած կոոպերատիվ շարժումների միջև հաջորդային կապի ու սկզբունքային տարբերության վերաբերյալ Լենինի խորին դիալեկտիկական գաղափարներին։ Այդ հարցի առթիվ սկզբունքային վեճ է տեղի ունեցել բոլշևիզմի և մենշևիզմի, հեղափոխականների և օպորտունիստների միջև։ Նշված գրքում մենք գիտակցաբար վերարտադրեցինք այդ վեճի էությունը, որ Լենինը մղել է Հոկտեմբերից շատ առաջ, սոցիալիզմի կառուցման և զարգացման ուղիները տեսականորեն մշակելու ընթացքում։

Վ. Ի. Լենինը գրել է. «Եվ ահա, օպորտունիստներն առաջին պլան են մղում սպառողական ընկերություններ լոզունգը, իսկ հեղափոխականները՝ քաղաքական իշխանությունը պրոլետարիատի կողմից նվաճելու լոզունգը։ Օպորտունիստները վիճում են. սպառողական ընկերությունները պրոլետարների իրական ուժ են, իրական տըն-



digitised by A.R.A.R.@

տեսական դիրքի նվաճում, սոցիալիզմի իսկական պատառիկ. դուք, հեղափոխականներդ, չեք հասկանում դիալեկտիկական զարգացումը, կապիտալիզմի այդ վերանումը սոցիալիզմի, սոցիալիզմի բջիջների այդ թափանցումը հենց կապիտալիզմի ընդերքը, կապիտալիզմի այդ դատարկումը նոր սոցիալիստական բովանդակության միջոցով:

Այո, պատասխանում են հեղափոխականները, մենք համաձայն ենք, որ սպառողական ընկերությունները որոշ իմաստով սոցիալիզմի պատառիկն են: 1-ին, սոցիալիստական հասարակությունը մի մեծ սպառողական ընկերություն է՝ սպառման համար պլանաչափորեն կազմակերպված արտադրությամբ. 2-րդ, սոցիալիզմն անիրագործելի է առանց հզոր, բազմակողմանի բանվորական շարժման, իսկ այդ բազում կողմերից մեկն էլ անխուսափելիորեն հանդիսանում են սպառողական ընկերությունները... Եվ այսպես, սպառողական ընկերությունները սոցիալիզմի մի պատառիկն են: Զարգացման դիալեկտիկական պրոցեսն իսկապես դեռ կապիտալիզմի շրջանակներն է խցկում նոր հասարակության տարրերը, նրա թե՛ նյութական, թե՛ հոգևոր տարրերը: Բայց սոցիալիստները պետք է կարողանան պատառիկն ամբողջից տարբերել, պետք է որպես իրենց լոզունգ առաջադրեն **ամբողջը** և ոչ թե մի պատառիկը, պետք է իսկական հեղաշրջման արմատական պայմանները հակադրեն այն մասնակի կարկատումներին, որոնք հաճախ մարտիկներին շեղում են իսկական հեղափոխական ճանապարհից» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 11, էջ 455—456):

Ավելի ուշ, առավել զարգացնելով իր գաղափարները կոոպերացիայի վերաբերյալ, Լենինը գրել է. «... Կոոպերատիվների դրությունն արմատապես սկզբունքորեն փոխվում է պրոլետարիատի կողմից պետական իշխանությունը նվաճելու ժամանակից, այն պահից, երբ պրոլետարական պետական իշխանությունը ձեռնարկում է սոցիալիստական կարգերի սիստեմատիկ ստեղծմանը: Այստեղ քանակն անցնում է որակի... Եթե կոոպերատիվն ընդգրկում է այն ամբողջ հասարակությունը, որտեղ հողը հանրայնացվել է և ֆաբրիկաներն ու գործարաններն ազգայնացվել են, ապա դա սոցիալիզմ է» **(ԵԼԺ, հ. 36, էջ 198—199):**

Որքա՜ն համահնչուն են այդ գաղափարները կոլտնտեսականների IV համամիութենական համագումարում Մ. Ս. Գորբաչովի ունեցած ելույթի հետ: Նա շեշտեց, որ ինչքան ավելի մեծ թափ է ձեռք բերում վերակառուցումը, «այնքան ավելի սուր կերպով է պահանջ զգացվում նորից և նորովի ընթերցել Լենինին, թափանցել նրա հայացքների խորքը՝ նոր հասարակարգի արարման ճանապարհին: Հենց այդպես էլ մենք վարվում ենք, երբ վերադառնում ենք լենինյան ամենափայլուն հայտնագործություններից մեկին՝ սոցիալիստական կոոպերացիայի մասին ուսմունքին»:

Լենինյան ուսմունքի ստեղծագործական զարգացումը հնարավորություն ընձեռեց հետևություն անելու, որ կոոպերատիվ հատվածը ամբողջ երկրի միասնական ժողովրդատնտեսական համալիրի իրավահավասար բաղադրամասն է: Հիմնականում այս ոգով սոցիալիզմի պայմաններում կոոպերացիայի առավել լայն նշանակության մասին սովետական հասարակագետները խոսել են 60-ական թվականներին: Մենք ավելի շատ ուշադրություն էինք դարձնում արտադրական կոոպերացիայի վրա, կոլտնտեսությունների վրա, ընդ որում դրանք համարելով կոոպերացիայի ամենաստորին ձևը, շեշտը դնում էինք այն մինչև պետական սեփականության մակարդակը բարձրացնելու վրա և չէինք բողոքում, երբ կամայականորեն, արհեստականորեն միացնում էին կոլեկտիվ և պետական տնտեսությունները՝ շատ բանում հակառակ կոլտնտեսականների իսկ ցանկությանը, որոնք գործնականում տեսնում էին կոլտնտեսությունների բազմաթիվ դեմոկրատական ու տնտեսական առավելությունները թույլ պետական տնտեսությունների համեմատ:

Դիալեկտիկական հակասությունները հատկապես բացահայտորեն ի հայտ են գալիս ոչ միայն կոոպերատիվ, այլև անհատական աշխատանքային գործունեության ընթացքում: Օբյեկտիվորեն այդ երևույթները տնտեսական ռեֆորմի իրականացման արդի պայմաններում դրական նշանակություն ունեն, քանզի արտադրության աճի և մասսաների աճող պահանջմունքները բավարարելու համար նրանք կոչված են մոբիլիզացնելու հսկայական ներքին հնարավորությունները: Արդեն բազմաթիվ դրական օրինակները ցույց են տալիս այդ նորամուծությունների ժամանակին [illegible] օգտակար լինելը: Դրանք մի քանի անգամ բարձրացնում են աշխատանքի արտադրողականությունը, մեծացնում արտադրանքի քանակը և բարելավում որակը, ընդլայնում նրա տեսականին և այլն: Այսպիսով, տնտեսական ռեֆորմի այդ կարևորագույն տարրերի աներկբայելի առավելությունների մասին վկայում է կյանքն ինքը՝ իր բազմաթիվ դրսևորումներում: Բայց կենդանի դիալեկտիկան միշտ պահանջում է գիտենալ կյանքում դրական երևույթների սահմաններն ու կողմերը: Որոշակի պայմաններում դրականը վերածվում է իր հակադրությանը: Եթե սպասարկման ոլորտում նոր ստեղծված կոոպերատիվներում աշխատում են երիտասարդ, բարձր որակավորում ունեցող, ընդունակ մարդիկ, որոնք կարող են մեծ օգուտ բերել հասարակական ձեռնարկությանը, ապա իհարկե, դրանից հասարակությունը ավելի շատ կորցնում է, քան ձեռք բերում: Բացի այս, եթե կոոպերատիվները խախտում են իրենց սոցիալիստական սկզբունքը, օրինակ, էժան գնով պետական խանութներում գնում են միս և արհեստականորեն այն «խորոված» վերածելով բնակչությանն են վաճառում զբոսայգիներում և այլ հիմնարկություններում 10 անգամ ավելի թանկ, ապա այս դեպքում մենք գործ ունենք ոչ թե աշխատանքային եկամուտների, այլ սպեկուլյացիայի, ժողովրդական պարենային պաշարների գողության և ողջ հասարակության աշխատավորներին ուղղակիորեն շահագործելու հետ: Այստեղ ամուր են պետական կարգավորման և հասարակական վերահսկման զանազան ձևերը: Դրա հետ է կապված նաև անհատական աշխատանքային գործունեությունը: Երբ այդ օգտակար գործի մեջ են ներքաշվում ավագ սերնդի ներկայացուցիչները, թոշակառուները, որոնք դեռևս ունակ են բարձր արտադրողականությամբ աշխատելու, ապա պետք է ամեն կերպ խրախուսել և ստեղծել բոլոր պայմանները դրանք լայնորեն տարածելու համար:

Մեր մամուլում ամեն օր լուսաբանվող բազմաթիվ օրինակները վկայում են մեզ մոտ և սոցիալիզմի մյուս երկրներում արտադրության աճի այդ լրացուցիչ հնարավորությունների մասին: Բայց երբ այդ անհատական գործունեությամբ հրապուրվում է երիտասարդների մի ամբողջ բանակ, ընդ որում մտածելով միայն նյութական օգուտների մասին, մոռանալով վարքի բարոյական նորմերը, ապա դրանից տուժում են հասարակական արտադրությունն ու սոցիալիստական բարոյականությունը: Ավելին, այստեղ զարգանում է տնտեսական և այլ էգոիզմը, այլ ոչ թե կոլեկտիվիզմը, որը կազմում է սոցիալիստական հասարակության գլխավոր հիմքն ու կարևորագույն տարբերիչ առանձնահատկությունը:

Այդպիսին է կենդանի դիալեկտիկան իր առավելություններով ու թերություններով, դրական ու բացասական գծերով՝ մեր կյանքի նոր երևույթների կիրարկմամբ: Կյանքի այդ դիալեկտիկան գիտենալը և պետական ու հասարակական կարգավորման ձևերը գտնելն այդ հասարակական պրոցեսները կառավարելու խնդիրն է: Այդ կառավարման կարևորագույն չափանիշը անձնական սեփականությունը համակողմանիորեն զարգացնելն է և այն մասնավոր սեփականության վերածվելը թույլ չտալը: Միայն այդ ուղիով ընթանալով կարելի է իրագործել սոցիալիզմի հիրավի լենինյան կոնցեպցիան, երբ պատմության մեջ առաջին անգամ ստեղծվում է մի հասարակարգ առանց հարուստների ու աղքատների, և որտեղ նոր հասարակարգն ապահովում է հասարակության բոլոր անդամների բարեկեցության անընդհատ աճը և նրանց համակողմանի զարգացումը: Սոցիալիզմի այդ լենինյան իդեալը ձեռք է բերվում, երբ միաժամանակ պայքար է մղվում ինչպես հավասարարության, այնպես էլ նոր միլիոնատերերի երևան գալու դեմ: Սոցիալիզմի հիմնական՝ «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սկզբունքի հետևողական իրագործումը բացառում է ինչպես հավասարարությունը, այնպես էլ նորահայտ միլիոնատերերին: Նրանք, ինչպես ցույց է տալիս կյանքը, հայտնվում են թալանի, զանազան մեքենայությունների և կաշառակերության միջոցով:

Այս բոլոր բացասական երևույթներից նոր հասարակությունն ազատելը և սոցիալիզմի լենինյան իդեալների հաղթանակի համար լայն ասպարեզ բացելը ՍՄԿԿ-ի, համաշխարհային սոցիալիզմի բոլոր երկրների ծրագրային խնդիրն է: Նրանք նոր հասարակության աճող բազմազանությունից բացի ունեն մեկ արմատական ընդհանուր գիծ, որով տարբերվում են բոլոր նախկին ֆորմացիաներից: Այդ արմատական տարբերիչ գծի մասին Լենինը մատնանշել է բազմիցս: Մեր կուսակցության ստեղծման առաջին տարիներից ի վեր Լենինը երազել է այն մասին, որ «նոր, լավագույն հասարակության մեջ չպետք է լինեն ո՛չ հարուստներ, ո՛չ աղքատներ, բոլորը պետք է մասնակցեն աշխատանքին... Այդ նոր, լավագույն հասարակությունը կոչվում է **սոցիալիստական հասարակություն** (**ԵԼԺ**, հ. 7, էջ 166): Շատ ավելի ուշ Լենինը մատնանշում էր, որ նոր, իսկ ազատ հասարակությունում «անկարելի կլինի հարստանալ ուրիշի հաշվին» (**ԵԼԺ**, հ. 37, էջ 612): Բոլոր այս և նման լենինյան մտքերը կարևոր են տնտեսական ռեֆորմի բոլոր ասպեկտները ճիշտ հասկանալու համար, այդ թվում՝ սոցիալիստական հավասարարության իրականացումը շահագործման բոլոր (հատ-





digitised by A.R.A.R.@

թյան մանիֆեստի» երրորդ կետի և Վլադիմիր Իլյիչի բազմաթիվ պատգամների ոգով:

Սոցիալիստական մաքսիմումի բուն սկզբունքը չի կարող հարստացում ծնել, մարդկանց միլիոնատեր դարձնել, որովհետև այդ սկզբունքի շարժական սահմանները միշտ կապված կլինեն ցածր վարձատրվողների կենսամակարդակի անշեղ անը միջին վարձատրություն ստացողների մակարդակին, իսկ վերջիններիս՝ բարձր վարձատրվողների մշտապես աճող մակարդակին հասցնելու հեռանկարի հետ: Սոցիալիստական կոլեկտիվիզմի այս սկզբունքը պետք է հիմք հանդիսանա յուրաքանչյուր կոնկրետ դեպքում ռեալ հակասությունների լուծման համար:

Այսպես, օրինակ, գյուղատնտեսական արտադրության վերակառուցման պայմաններում հայտնվում են մեծ եկամուտ ստացող ուժեղ կոլտնտեսություններ, բայց դեռևս մնում են թույլ կոլտնտեսություններ: Հաճախ ուժեղ կոլտնտեսությունները չեն ցանկանում օգնել թույլ կոլտնտեսությանը, որպեսզի նրանց մոտ չզարգացնեն խնամառուական տրամադրություններ: Այդ դեպքերում անհրաժեշտ է ուժեղ կոլտնտեսություններին խորհուրդ տալ թույլերին օգնել՝ որոշակի ժամկետով և առանց որևէ տոկոսի պարտք տրամադրելու միջոցով: Սա սոցիալիստական կոլեկտիվիզմի հիման վրա ուժեղ և թույլ կոլտնտեսությունների միջև հակասությունների լուծման ուղիներից մեկն է:

Սոցիալիզմի կատարելագործման և աստիճանաբար կոմունիզմին անցնելու պայմաններում կյանքը ծնելու է բազմաթիվ նոր հակասություններ և պահանջելու է դրանք լուծել ստեղծագործաբար: Սա վերաբերում է ինչպես ներքին, այնպես էլ արտաքին քաղաքականությանը: Նոր հարցերի շարքում հատուկ նշանակություն է ձեռք բերում միջուկային մեր դարում փոխադարձաբար երկու սիստեմների և ողջ մարդկության ոչնչացման վտանգի պայմաններում հակամարտ հակասությունների լուծման կոմպրոմիսներ գտնելու հնարավորությունը: Առհասարակ երկու համաշխարհային սիստեմների խաղաղ գոյակցության և մրցակցության լենինյան տեսությունը ենթադրում է այդ հիմնական հակամարտ հակասությունն ընդհանուր առմամբ և ամբողջությամբ լուծել առանց պատերազմի, նոր հասարակարգի առավելության համակողմանի բացահայտման միջոցով, այլ ոչ թե ուրիշ երկրներին բռնությամբ նոր կարգեր պարտադրելու ճանապարհով: Այս կապակցությամբ մենք ունենք Լենինի ծրագրային դրույթը, որն անշեղորեն իրականացնում է կոմունիստական կուսակցությունը: Լենինը, մերժելով կուսակցության մեջ ձախ տարրերի արկածախնդրական պլանը, գրել է. «Գուցե հեղինակները կարծում են, թե միջազգային հեղափոխության շահերը պահանջում են առա՞ջ մղել այն, իսկ այդպիսի առաջմղում կհանդիսանար միմիայն պատերազմը և ոչ երբեք հաշտությունը... Նման «տեսությունը» միանգամայն հակառակ կլիներ մարքսիզմին, որը միշտ ժխտել է հեղափոխությունների «առաջմղումը», որոնք զարգանում են հեղափոխություն ծնող դասակարգային հակասությունների սրության հասունանալուն համընթաց» (**ԵԼԺ**, հ. 35, էջ 478):

Այդպիսով, նոր հասարակարգն իր առավելությունը կդրսևորի իր շահեկան կողմերը ցույց տալով առանց համաշխարհային պատերազմների, առանց հեղափոխության և հակահեղափոխության արտահանության ու ներմուծման:

Այդ պատմական երկար ճանապարհին նոր հասարակարգի բուն պատմական առավելությունը չի իրականացվում ուղղագծորեն, ինքնաբերաբար: Ավելին, կյանքը ցույց տվեց, որ այդ առավելությունը ծնում է, ինչպես նշվեց վերը, մի շարք ստվերոտ կողմեր, որոնք անհրաժեշտ է հաղթահարել կուսակցության դաստիարակչական աշխատանքի ուժեղացման միջոցով: Գործազրկությունը բացառող, բոլորին երաշխավորված իրավունքներ ապահովող սոցիալիզմի ստվերոտ կողմերի թվին են պատկանում անտարբերությունը, անպատասխանատվությունը, հասարակական ունեցվածքի նկատմամբ ոչ սրտացավ վերաբերմունքը, ամենօրյա վարվելակերպի նորմերի և կանոնների ամեն կարգի խախտումները: Այս և նման ստվերոտ կողմերը բացահայտորեն դրսևորվել են մեզ մոտ և սոցիալիզմի մյուս երկրներում: Այս բացասական կողմերն անհրաժեշտ է հաղթահարել սոցիալիզմի բուն առավելությունների ամբողջ հզորությամբ, ամենից առաջ կոմունիստական իդեալների օգնությամբ: Ահա թե ինչու կոմունիստական իդեալների պրոպագանդան, նրանց նկատմամբ անսասան հավատի ներարկումը կուսակցության ամբողջ դաստիարակչական աշխատանքի առաջնակարգ խնդիրն է: Իսկ այդ միջոցառումներից գլխավորը սոցիալիստական գիտակցության բարձրացումն է: Իսկ մասսաների գիտակցության բարձրացումը Լենինը համարում



էր կոմունիստական կուսակցության հիմնական խնդիրը: Կոմունիզմի առաջին փուլի շրջանում բոլոր իրապես գոյություն ունեցող հակասությունների հաղթահարումը հին հասարակությունը նորի վերափոխելու հեղափոխական պրոցեսի շարունակությունն է:

Սոցիալիզմի կառուցման և երկու սիստեմների հակամարտության պայմաններում աճում է հասարակության և բնության միջև եղած հավերժական հակասությունը: Ծագում են բազմաթիվ բարդ էկոլոգիական պրոբլեմներ, որոնցից շատերը հնարավոր է լուծել շատ պետությունների համատեղ ջանքերով միայն: Պատահական չէ, որ այս պրոբլեմին նույնպես անհրաժեշտ ուշադրություն է դարձվել կուսակցության որոշումներում:

Իսկ թե ինչ է նշանակում հեղափոխական զարգացման այս նոր շրջափուլը, մենք տեսնում ենք այն մաքրագործման աշխատանքում, որ մեր կուսակցությունը սոցիալիզմի կատարելագործման և դեպի կոմունիզմ անշեղ առաջխաղացման շրջանում տանում է բոլոր բացասական երևույթների դեմ իր մղած վճռական պայքարում: Դժվար է թվարկել կամ նույնիսկ մանրամասնորեն դասակարգել իրական կյանքի հակասությունների բոլոր տեսակներն ու դրսևորման ձևերը:

Իրականում յուրաքանչյուր առաջընթաց քայլ խոշոր, միջին և մանր ծավալի՝ նոր ծագող հակասությունների բացահայտում է և պայքար դրանք հաղթահարելու համար: Ուստի և առաջընթացի յուրաքանչյուր քայլ պայքար է նորանոր իրական հակասությունների լուծման համար:

Այդպիսիք են իրական առաջընթացի կենդանի դիալեկտիկան, սոցիալիզմի զարգացումն ու նրա նորացումը:

---

digitised by A.R.A.R.@

պատմությունը միայն ու միայն մաքրվում է անհատի պաշտամունքի շրջանի սուբյեկ-
տիվ աղավաղումներից ու գունազարդումներից: Դրանով իսկ նաև ժողովուրդն է ա-
սում ճշմարտությունը: Այդ պատճառով էլ վերակառուցման պայմաններում խոսքը ոչ
թե հասարակության, պետության, կուսակցության պատմության հերթական կոնյունկ-
տուրային վերաշարադրման մասին է, այլ ճշմարտացի պատմության ստեղծման, այն
անհատի պաշտամունքի, լճացման ու պահպանողականության տարիների կոնյունկ-
տուրային անհամար աղավաղումներից մաքրելու մասին:

Մեր երկրի պատմությունը սևացնում են ո՛չ նրանք, ովքեր քննադատում են այդ
ժամանակների բացասական երևույթները: Այն էապես սևացրել են ամենքիս հայտնի
գործիչներն ու նրանց կամակատարները: Այդ պատճառով էլ հայրենասերը նա չէ, ով
շարունակում է պաշտպանել կամ քողարկել անցյալի՝ սոցիալիզմի սկզբունքներին հա-
կասող երևույթները, այլ նա, ով, հետևելով կուսակցության XXVII համագումարի
տված ճշմարտության դասերին, իմաստավորում է իր երկրի պատմությունը՝ նրա բո-
լոր նվաճումներով, փորձություններով ու անհաջողություններով: Ինչպես արդարա-
ցիորեն նշվում է «Պրավդայի» խմբագրականում, «Հայրենասերը նա չէ, ով բարձրա-
ձայն բղավում է սոցիալիզմի իբր «ներքին» սպառնալիքի մասին... Հայրենասերը նա
է, ով, չվախենալով ամեն մի դժվարությունից, գործում է երկրի շահերի, ժողովրդի
բարօրության օգտին»:

Ստալինի ղեկավարությամբ իրագործված հակալենինյան, հակասոցիալիստա-
կան պրակտիկան խարխլեց մեր երկրի տնտեսական, սոցիալ-քաղաքական և բարո-
յական հիմքերը, այն վիշտ ու տառապանք բերեց միլիոնավոր սովետական ազնիվ
մարդկանց: Այդ պատճառով էլ, պատմական նշանակության վիթխարի նվաճումների
համար օրինական հպարտության հետ միասին, սովետական ժողովուրդը չի կարող
նվաստացման ու ցավի զգացում չապրել մի շարք բացասական երևույթների համար,
որոնք արատավորում են մեր երկրի պատմության էջերը և որոնք հնարավոր չէ ջըն-
ջել:

Ի՞նչ զգացում նա կարող էր ունենալ, օրինակ, անհատի պաշտամունքի շրջանի՝
երկրի պատմությունն արատավորած այն երեսպաշտական քաղաքականությունից,
երբ մի կողմից ազդարարվում էր սոցիալիզմի հաղթանակի, մյուս կողմից՝ դասակար-
գային պայքարի սրման մասին, որի հետևանքը եղավ անօրինականության սանձար-
ձակ ծավալումը:

Ի՞նչ զգացում կարող է ունենալ ժողովուրդը պատմության այն անբացատրելի
պարադոքսից, երբ սոցիալիստական հեղափոխության և կոմունիզմի իդեալների հա-
մար մարտնչած բոլշևիկների կուսակցության հազարավոր անդամներ, լենինյան գվար-
դիայի աննկուն գործիչներ այնուհետև բարբարոսաբար ոչնչացվեցին «հանուն սո-
ցիալիզմի»:

Ի՞նչ զգացում կարող էին ունենալ հազարավոր չքավոր գյուղացիական ընտանիք-
ները, որոնք Հոկտեմբերյան մեծ հեղափոխության շնորհիվ հող ստացան, կարգի
գցեցին իրենց տնտեսությունը, իսկ այնուհետև կուլակաթափ արվեցին և հալածվեցին
իբրև դասակարգային թշնամիներ կամ դրանց հանցակիցներ: Ի՞նչ զգացում կարող
էր ունենալ կոլտնտեսային գյուղացիությունը, երբ հակառակ ՍՍՀՄ սահմանադրու-
թյամբ հռչակված «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝
ըստ աշխատանքի» մեծ սկզբունքի, երկար տարիներ նա իր աշխատանքի դիմաց ոչ
մի հատուցում չէր ստանում:

Հնարավո՞ր է որևէ արդարացում գտնել այն բանին, որ ամենքիս հայտնի ղե-
կավարների նախապատերազմյան անհեռատես քաղաքականության ու սխալ գործո-
ղությունների հետևանքով հարյուր հազարավոր զինվորներ ու հրամանատարներ պա-
տերազմի սկզբում հայտնվեցին թշնամական գերության մեջ, այնուհետև անմեղ պատ-
ժի ենթարկվեցին, իսկ նրանցից շատերը կործանվեցին ճամբարներում:

Կարո՞ղ էր արդյոք սովետական ժողովուրդը լռելյայն հաշտվել այն բանի հետ,
երբ երկար ժամանակ, աշխատավորական կոլեկտիվներից սկսած մինչև Գերագույն
սովետի նստաշրջաններ ու կուսհամագումարներ, թմբկահարվում էին ժողովրդական
տնտեսության պլանների կատարման ու գերակատարման մասին, մինչդեռ իրակա-
նում 70-ական թվականներին նկատելիորեն նվազել էին երկրի տնտեսական աճի
տեմպերը, որի հետևանքով չկատարվեցին տնտեսական զարգացման՝ ՍՄԿԿ ծրա-



գրով առաջադրված խնդիրները և նույնիսկ իններորդ ու տասներորդ հնգամյակների
ավելի ցածր առաջադրանքները, լիովին չիրագործվեց այդ տարիների համար նա-
խատեսված սոցիալական ծրագիրը:

Նման հարցերի թվարկումը, ցավոք, կարելի է երկար շարունակել, բայց հետե-
վությունը մեկն է. այդ բոլոր երևույթները անկարելի է ջնջել երկրի ճակատագրից ու
պատմությունից:

Իր ժամանակին սովետական մարդկանց մեծ մասը այն պարզունակ համոզմուն-
քին էր, թե սոցիալիզմի կառուցման՝ բոլշևիկների կուսակցության մշակած սկզբունք-
ներից կատարված այս և մյուս շեղումներին Ստալինը որևէ մասնակցություն չուներ:
Բայց երբ ՍՄԿԿ XX համագումարից հետո հավաստիորեն հայտնի դարձավ, որ այդ
ամենից շատ բան բխում էր Ստալինի «տեսական» դրույթներից և անմիջական ցու-
ցումներից, ապա, բնականաբար, տեղի ունեցավ արժեքների վերագնահատում, այդ
թվում և ինդուստրացման, կոլեկտիվացման, կուլտուրական հեղափոխության գոր-
ծում, Հայրենական մեծ պատերազմում նրա դերի հարցում:

Սովետական մարդիկ այն ժամանակ իմացան՝ երկրի բազմաբնույթ պատմության
մեջ եղել են ոչ միայն «հանուն հայրենիքի, հանուն Ստալինի» բացականչություն-
ներ, որոնք հայրենիքի ազատության համար գրոհի են հանել անվեհեր զինվորներին
ու հրամանատարներին, այլև այն, որ կուսակցությունը դատապարտել է անհատի
պաշտամունքը, որը մեծ վնաս է պատճառել հայրենիքի շահերին, սոցիալիզմի գոր-
ծին:

Մամուլում ընթերցողների նամակներ են տպագրվում, որոնց հեղինակները ջա-
նում են անցյալի երևույթներն ու դրանց բացասական հետևանքները արդարացնել
արտաքին ու ներքին անտվոր բարդ, խճճված իրադրությամբ: Ինչպես նշվում է
«Պրավդայի» խմբագրական հոդվածում, «փորձ է արվում լոկ ծայրահեղ իրադրու-
թյան վկայակոչմամբ սպիտակեցնել անցյալը, արդարացնել քաղաքական ձևախե-
ղումները և սոցիալիզմի հանդեպ հանցագործությունները»: Անշուշտ, իրադրությունը
բարդ էր ու ծայրահեղ լարված թեկուզև այն պատճառով, որ պատմության մեջ առա-
ջին անգամ վիթխարի ու բազմազգ երկրում լուծվում էին սոցիալիստական շինարա-
րության հարցերը: Բայց և այնպես բերված փաստարկների հետ դժվար է համա-
ձայնվել: Չէ որ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո առաջին տասը
տարում դրությունը շատ ավելի դժվար ու խճճված էր, բայց բոլշևիկների կուսակ-
ցությունը Լենինի գլխավորությամբ կարողացավ հաջողությամբ լուծել ներքին ու ար-
տաքին քաղաքականության խիստ բարդ հարցերը, ապահովեց երկրի վիթխարի մի-
ջազգային հեղինակությունը: Իհարկե, այն ժամանակ էլ վրիպումներ կային, որոնք
որոշակի սխալների հետևանք էին: Բայց 20-ական թվականների վերջերից սկսած և
հատկապես Ստալինի անձի պաշտամունքի շրջանում ծավալված վոլյունտարիստա-
կան պրակտիկան չի կարելի արդեն «առանձին սխալներ» կոչել: Դա լավ կշռա-
դատված պրակտիկա էր, որը հակասում էր մարքսիզմ-լենինիզմի գիտական տեսու-
թյանը:

Ստալինյան ռեժիմի պաշտպաններին տեղին է հիշեցնել սոցիալիզմի մարքս-լե-
նինյան ըմբռնման մի քանի տարրական ճշմարտություններ: Քաղաքական բնագա-
վառում դա իսկական դեմոկրատիայի հաստատումն է, այնուհետև նաև ամբողջ ժո-
ղովրդին պետության ու հասարակության կառավարման մեջ ներգրավելը: Մինչդեռ
ստալինիզմի գործնական քաղաքականությունը հանգեցրեց կառավարման հրամանա-
տարական-պատժիչ վարչական համակարգի հաստատմանը՝ իր հանրահայտ բացա-
սական հետևանքներով: Սոցիալ-տնտեսական ոլորտում սոցիալիստական հեղափո-
խությունը դեպի իր հաղթանակն էր ընթանում «Հողը՝ գյուղացիներին», «Գործարան-
ները՝ բանվորներին» լոզունգների ներքո: Այդ լոզունգները հետևողականորեն իրա-
կանացվում էին Լենինի ղեկավարությամբ: Սակայն ստալինյան խեղաթյուրումների
հետևանքով բանվորն ու գյուղացին վերածվեցին ինչ-որ մի վերացական «երկրի տե-
րերի»: Եվ պատահական չէ, որ վերակառուցման ամենաէական խնդիրներից մեկը
դարձել է գյուղացու մեջ՝ հողի, բանվորի մեջ՝ ձեռնարկության, հասարակության բո-
լոր անդամների մեջ՝ երկրի տիրոջ զգացման վերածնումը:

Ստալինը լուրջ շեղումներ թույլ տվեց նաև ազգային քաղաքականության լենին-
յան ծրագրից: Նա մոռացության մատնեց բազմազգ պետության մեջ ազգամիջյան
հարաբերությունների կառավարման կազմակերպման հարցում պատմական, քաղա-



digitised by A.R.A.R.@

քական, իրավական, մշակութային, բարոյական, սոցիալ-հոգեբանական և մյուս գործոնները համակողմանի հաշվի առնելու մասին մարքս-լենինյան ուսմունքը: Ավելին, նրա ցուցումով կամայականորեն փոփոխվեցին որոշ հանրապետությունների վարչատարածքային սահմանները, ստեղծվեցին միմյանցից անջատ միութենական հանրապետություններ և ինքնավար մարզեր, թեև դրանցում ապրում են միևնույն ազգության մարդիկ և նրանց տերիտորիաները անմիջականորեն սահմանակից են: Ստալինյան ռեպրեսիաները տարածվեցին ոչ միայն միլիոնավոր մարդկանց ու ընտանիքների վրա, այլև ամբողջ ժողովուրդների: Այդ ամենով հանդերձ, որպես անվիճելի ճշմարտություն, ազդարարվել էր ազգային հարցի, ազգամիջյան հարաբերությունների լիակատար լուծումը:

Երկրի պատմության այս և ուրիշ անվիճելի փաստերը վկայում են, որ 20-ական թվականների վերջերին շրջադարձ սկսվեց գիտական տեսությունից և սոցիալիզմի կառուցման լենինյան կուրսից: Եվ դժվար չէ ըմբռնել, որ եթե չլինեին այդ շրջադարձն ու դրա հետ կապված խոշորամասշտաբ բացասական հետևանքները, ապա չէր լինի և սովետական հասարակության բոլոր ոլորտների հեղափոխական վերակառուցման հրամայական անհրաժեշտությունը՝ նրա զարգացման 70-ամյա ժամանակաշրջանից հետո:

Այս կապակցությամբ այլ կերպ, քան պատմության անըմբռնողության կամ կեղծման հետևանք չես կոչի Ն. Անդրեևայի հոդվածի այն պնդումը, որ եթե չլիներ պրոլետարիատի դիկտատուրայի պետության պատմական ներդրումը, ապա «մենք այսօր վերակառուցելու որևէ բան չէինք ունենա»: Բայց չէ՞ որ տվյալ պրոբլեմի վերաբերյալ քննադատական հոդվածներում ոչ ոք չի տարակուսել պրոլետարիատի դիկտատուրայի պետության և կապիտալիզմից սոցիալիզմին անցման շրջանում նրա ստեղծարար դերի հարցում: Սակայն, դրա հետ մեկտեղ, միանգամայն ակներև է դարձել, որ «ստալինյան դարաշրջանում առկա էր շեղումը պրոլետարիատի դիկտատուրայի պետության ու նրա հիմնական ֆունկցիաների մասին մարքս-լենինյան ուսմունքից: Գործնականում այն շատ բանում հանգեցվում էր անձնական իշխանության, անձնական դիկտատուրայի տիրապետության: Հենց դրա հետևանքով էր, որ պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը չապահովեց երկրի ավելի ծանրակշիռ նվաճումները, որոնց համար կային իրական հնարավորություններ: Հենց այդ պատճառով, այլ ոչ «պատմական ներդրման» առնչությամբ, ծագեց հեղափոխական վերակառուցման, սոցիալիստական պետության և նրա գործունեության դեմոկրատական հիմունքների վերածնման, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումը ի շահ հասարակության և նրա յուրաքանչյուր անհատի զարգացնելու անհրաժեշտությունը:

Պրոլետարիատի դիկտատուրայի պետության գործունեության ձևախեղման պատճառները չըմբռնելու հետ է կապվում նաև ստալինիզմի պաշտպանների այն պնդումը, թե դրա էությունը մերկացնող գրողներն ու գիտնականները անտեսում են դասակարգերի ու մասսաների գործունեության մեջ դրսևորվող հասարակական զարգացման օբյեկտիվ օրենքները, դրանով իսկ խեղաթյուրում մեր երկրում սոցիալիզմի պատմությունը: Բայց այստեղ տեղին է հարցնել. ստալինյան կառավարման շրջանում դասակարգերի ու մասսաների գործունեությունը ո՞րչափով էր նպատակաուղղվում սոցիալիզմի կառուցման օբյեկտիվ օրենքներին համապատասխան: ՍՄԿԿ XXVII համագումարի, Կենտկոմի հաջորդ պլենումների, XIX կուսկոնֆերանսի առթիվ Կենտկոմի թեզիսների, ինչպես նաև առանձին հետազոտությունների նյութերի գիտական վերլուծությունը համոզիչ կերպով ցույց է տալիս, որ հենց այդ շրջանում էին անտեսվում սոցիալիզմի կառուցման օբյեկտիվ օրենքները, որը և հանգեցրեց նրա ձևախեղմանը: Դրա հետևանքով էապես կաշկանդվեց դասակարգերի ու մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը, աշխատավոր ժողովրդի դերը իջեցվեց պտուտակի աստիճանի, որի պարտականությունը հանգեցվում էր վերին իշխանությունների, ամենից առաջ «մեծ առաջնորդի, ուսուցչի ու հոր» ցուցումների անշեղ կատարմանը: Դրանում էլ արտահայտվեցին շեղումները սոցիալիզմի օբյեկտիվ օրենքներից, որի պատմությունը խեղաթյուրում են ոչ թե անհատի պաշտամունքը մերկացնողները, այլ նրա պաշտպանությամբ հանդես եկողները:

Յուրօրինակ մոտեցում է դրսևորվում նաև բրեժնևականության պաշտպանման փորձերում: Որոշ հեղինակներ, օրինակ, պրովոկացիոն են համարում այն հարցը, որ իր ժամանակին չափազանց մեծ ուշադրություն էր նվիրվում Մալայա զեմլյայի ռազ-



մական անցքերին և այդ ֆոնի վրա թերագնահատվում էր Հայրենական մեծ պատերազմի ռազմաճակատների մյուս ուղղությունների մարտական գործողությունների նշանակությունը: Մինչդեռ հայտնի է, որ այդ հարցը ծագել է ո՛չ հիմա, դա առաջ քաշվեց դեռ այն ժամանակ, երբ խոսում ու գրում էին ոչ այնքան Մալայա զեմլյայի հերոսների մասին, որքան 18-րդ բանակի քաղբաժնի պետի: Ստվերում էին մնացել նույնիսկ ականավոր զորահրամանատարները, որոնք մշակել ու ղեկավարել էին այդ գործողությունները: Ավելին, քաղբաժնի պետի ծառայությունները փառաբանելու համար 18-րդ բանակի թանգարաններ էին ստեղծվել մի շարք քաղաքներում, թեև դրանք ուղղակի առնչություն չունեին այդ բանակի հետ: Կամ մի ուրիշ օրինակ Կիևի Հայրենական մեծ պատերազմի հուշահամալիրից: Այդ համալիրի գլխամասը եզրափակող դահլիճի պատերին փորագրված են Սովետական Միության հերոսների անունները: Ամենաբարձր տեղում առաջինը նշված է 18-րդ բանակի քաղբաժնի պետի անունը և հետո միայն փառաբանված մարշալ Գ. Կ. Ժուկովի անունը: Տեղին է հարցնել՝ ինչպիսի՞ խոհեր ու հարցեր են ծագում այցելուների և ամենից առաջ պատերազմի վետերանների մեջ: Պարզ է, որ մարդկանց պատասխանն ու զայրույթը միանշանակ են:

Միանգամայն ակնհայտ է, որ եթե մարդիկ տարակուսում են այս կամ այն պատմական իրադարձության, ռազմական դեպքերի, այդ իրադարձությունների մասնակիցների ծառայության գնահատման հարցում, ապա դա արվում է միայն մի նպատակով՝ պարզելու և հաստատելու արդարությունը, այլ ոչ թե կասկածի տակ դնելու ժողովրդի սխրանքը:

Ակնհայտ է նաև, որ միայն այդպես և ոչ այլ կերպ պետք է գնահատել այն քննադատությունը, որ այժմ արվում է Ստալինի անձի պաշտամունքի հետ առնչվող իշխանության չարաշահումների ու սոցիալիզմի սկզբունքների աղավաղումների, ինչպես նաև բրեժնևականության տիրապետության ժամանակ երկիրը նախաճգնաժամային վիճակի հասցնելու կապակցությամբ:

Երկրի ամեն մի անկանխակալ քաղաքացի չի տարակուսում, որ գյուղատնտեսության կոոպերացման լենինյան պլանից կատարված շեղումները, կառավարման հրամանատարական-վարչական մեթոդների հաստատումը և չափից ավելի կենտրոնացումը, տեղական մարմինների և ժողովրդի ինքնակառավարման իրավունքների սահմանափակումը, նյութական բարիքների բաշխման գործում հավասարարությունը, «ներքին» խավերի և սոցիալ-կենցաղային արտոնությունների ստեղծումը «վերնախավերի» համար, սոցիալիստական արդարության սկզբունքների այլ խախտումներ, հասարակության մեջ կասկածամոլության և սարսափի իրավիճակի հաստատումը, մարդկային արժանապատվության թերագնահատումը, բյուրոկրատիզմի, անաշխատ եկամուտների, հովանավորչության, կաշառակերության և այլ երևույթների տարածումը կազմում են անհատի պաշտամունքի, լճացման ու պահպանողականության շրջանների գործնական քաղաքականության հետևանքների էությունը, արդյունք են սոցիալիզմի օբյեկտիվ օրենքների անտեսման: Եվ այդ մասին չի կարելի լռել, քանի որ առանց անցած տարիների հիշյալ քաղաքականության հետևանքով կուտակված այդ հիվանդություններից մեր հասարակության լիակատար ապաքինման մենք չենք կարողանա վերածնել սոցիալիզմի լենինյան էությունը, անհնար կլինի իրականացնել վերակառուցումը:

Ժողովուրդը պետք է իմանա մեր պատմության ամբողջ ճշմարտությունը և դրանից հետևություն անի այն հաշվով, որպեսզի հետագայում որևէ մեկին թույլ չտա ոտնահարել սոցիալիզմի սկզբունքները: Այլապես երբեք արմատախիլ չեն արվի ապօրինության ու կամայականության մնացուկները, որոնք հիմա էլ դեռ երբեմն դրսևորվում են և որոնց մասին այնպիսի կրքով ու սոցիալական անհանդուրժողականությամբ այսօր գրում է մամուլը:

Միայն պատմության ճշմարտության հիման վրա է՛լ ավելի ամուր ու ներգործուն կդառնան սոցիալիստական հասարակության քաղաքական ու բարոյական անվիճելի արժեքները: Եվ եթե վերջին ժամանակների հրապարակումների թվում դեմոկրատացման ու հրապարակայնության շնորհիվ երևան են գալիս քննադատական աշխատություններ անհատի պաշտամունքի, լճացման ու պահպանողականության ժա-



digitised by A.R.A.R.@

ամբողջ ճշմարտությունը մեր երկրի անցյալի ու ներկայի մասին, որի շնորհիվ սովետական մարդիկ, մեր արտասահմանյան բարեկամները, ողջ համաշխարհային հասարակայնությունը կըմբռնեն լենինյան կուսակցության ղեկավարությամբ սկսված հեղափոխական վերակառուցման իսկական պատճառներն ու անհրաժեշտությունը: Ինչպես ցույց են տալիս վերակառուցման առաջին արդյունքները, հատկապես դեմոկրատիայի ու հրապարակայնության զարգացման կուրսի իրականացման, ինչպես նաև պատմության ճշմարտության վերականգնման ու նրա ստվերոտ կողմերի ընդունման վերաբերյալ լուրջ հրապարակումների երևան գալու ասպարեզում, մեր երկրի հեղինակությունը այդ ամենից ոչ միայն չնվազեց, այլև նկատելիորեն բարձրացավ:

Իհարկե, հարկավոր է վճռականորեն խափանել այն սերունդների նկատմամբ անհարգալից վերաբերմունքի ամեն մի դրսևորում, որոնք անցել են աշխարհում առաջին սոցիալիստական հասարակության ստեղծման չհետազոտված ուղին և ապահովել նրա պատմական նվաճումները: Բայց նույնչափ էլ ակնհայտ է, որ չի կարելի, անթույլատրելի է անհատի պաշտամունքի, լճացման ու պահպանողականության ժամանակների բազմաթիվ բացասական երևույթների քննադատությունը ժողովրդի ու նրա պատմական նվաճումների հանդեպ անհարգալից վերաբերմունքի հանգեցնելը:

Չէ՛ որ պատմության ճշմարտությունը ժողովրդին հարկավոր է ոչ միայն իր տոները նշելու, այլև իր անհաջողություններն ու կորուստները իմաստավորելու, այն ամենի պատմական արմատներն ու հիմնական պատճառները բացահայտելու համար, ինչը խանգարում է սոցիալական առաջընթացի ուղիով շարժմանը: «Հարցն այն է,— ՍՄԿԿ Կենտկոմի 1988 թ. փետրվարյան պլենումում ասաց Մ. Ս. Գորբաչովը,— որ գրվի ճշմարտացի և լիակատար պատմությունը, որ լինի ժողովրդի կյանքի ու պայքարի պատմությունը: Սա պատմական հետազոտությունների մարքս-լենինյան մեթոդաբանության հիմնական հարցն է:

Եվ եթե դրան հետևենք, ապա հարկավոր է վառ կերպով ցույց տալ, թե ինչպես են ապրել, ինչպես են աշխատել, ինչին են հավատացել միլիոնավոր մարդիկ, ինչպես են միախառնվել հաղթանակներն ու անհաջողությունները, հայտնագործություններն ու սխալները, լուսավորն ու ողբերգականը, մասսաների հեղափոխական խանդավառությունն ու սոցիալիստական օրինականության խախտումները, իսկ երբեմն էլ՝ հանցագործությունները: Հենց դա էլ կլինի պատմությանը՝ որպես ժողովրդական զանգվածների գործունեության արդյունքին ուղղված գիտական, մատերիալիստական հայացք: Հենց դա էլ կլինի դրա դիալեկտիկական ըմբռնում, որին խորթ է միակողմանիությունը, որը պատմությունը քննության է առնում ամբողջ բազմազանությամբ, բարդությամբ ու հակասականությամբ հանդերձ, առանց առանձին կողմերի գերաճած ուռճացման»:

Ժողովուրդը պատմություն է ստեղծում, բայց այն արտացոլվում ու գալիք սերունդներին է թողնվում օբյեկտիվ գիտական հետազոտություններում, ժողովրդի ըմբռնումների ճանաչված տաղանդավոր արտահայտիչների գրական և այլ ստեղծագործություններում:

Այդ պատճառով էլ վերակառուցման պայմաններում գիտական պատմության կարևորագույն խնդիրն է. օգնել հասարակության յուրաքանչյուր անդամի՝ ամբողջության մեջ իմաստավորելու իրական կյանքի հաճախ հակասական փաստերն ու պրոցեսները, ըմբռնելու, թե որ արժեքներն ու սկզբունքներն են իսկապես սոցիալիստական, լայն մասսաներին դաստիարակել հեղափոխական վերակառուցման անհրաժեշտության նկատմամբ համոզվածության ու նվիրվածության ոգով:

---

# ԲԱՐՈՅԱԿԱՆ ԻՆՔՆԱՄԱՔՐՄԱՆ ՈՒՂԻՈՎ

Վ. ՄԻՐԶՈՅԱՆ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ 80-ական թվականների կեսից թևա-
կոխել է իր զարգացման կարևորագույն փուլերից մեկը: Կոմունիստների
կուսակցությունը, ելնելով հասարակական զարգացման օբյեկտիվ օրինաչափություն-
ների վերլուծությունից, ոտքի է հանել ժողովրդին հանուն մեր կյանքի բոլոր ոլորտ-
ների վերլուծությունից, ոտքի է հանել ժողովրդին հանուն մեր կյանքի բոլոր ոլորտ-
ների հեղափոխական վերակառուցման: Առաջադրված են վիթխարածավալ խնդիր-
ներ՝ էկոնոմիկայի կառավարման արմատական կատարելագործում, սոցիալ-տնտե-
սական զարգացման արագացում, ճգնաժամային երևույթների և արգելակման մե-
խանիզմների հաղթահարում, սոցիալական հաստատությունների գործունեության բա-
րեփոխում, հասարակության դեմոկրատացում, սոցիալիզմի առավելությունների և
հնարավորությունների առավել լրիվ օգտագործում:
Այս խնդիրների լուծման ընթացքի եռամյա փորձը մեզ համոզում է, որ վերակա-
ռուցումը, իր հաջողություններով և բարդություններով հանդերձ, առաջին պլան է
մղում ստրատեգիական կարևորության այնպիսի խնդիր, ինչպիսին մարդկանց բա-
րոյական, հոգեբանական վերակառուցումն է, ամբողջ հասարակության բարոյական
առողջացումը, սոցիալիստական հասարակարգի բարոյական ինքնամաքրման հնարա-
վորությունների բացահայտումը:
Տվյալ խնդրի լուծումը վճռորոշ է առաջադրված նպատակների կենսագործման,
վերակառուցման վերափոխիչ ներուժի բացահայտման, մեր հասարակության սոցիա-
լիստական զարգացման հետագա ընթացքի ապահովման համար: Նախկինի պես
ապավինել լոկ տնտեսական և կազմակերպական փոփոխություններին՝ առանց լրջո-
րեն շոշափելու մարդկանց ներաշխարհը, բարոյական գիտակցությունը, հոգեբանու-
թյան խորքային շերտերը, նշանակում է կրկին բարձիթողի անել հասարակական
զարգացման ընթացքը, տեղիք տալ խոսքի և գործի խզմանը, ի վերջո՝ խեղաթյուրել
վերակառուցման ոգին: Անտեսել մարդկանց բարոյական, հոգեբանական վերակա-
ռուցման, բուն իսկ սոցիալական վերափոխումների և տնտեսական մեխանիզմների
բարոյական կողմը՝ նշանակում է կրկին բախվել լճացման վտանգին:
Այս հարցը, այսինքն՝ սոցիալական, տնտեսական, կազմակերպական, տեխնո-
լոգիական և այլ կարգի օբյեկտիվ փոփոխությունների ներդաշնակումը բարոյական,
հոգեբանական, անձնային փոփոխությունների հետ, սկզբունքային նշանակություն
ունի վերակառուցման ընթացքի կառավարման, առաջադրված բոլոր խնդիրների ան-
խափան լուծման համար: Իսկապես, եթե սխալ է ապավինել լոկ արտաքին փոփո-
խություններին, անտեսել մարդկանց ներքին վերափոխման անհրաժեշտությունը,
ապա ոչ պակաս կոպիտ սխալ է սահմանափակվել լոկ մարդու ներաշխարհով, փոր-
ձել վերափոխել մարդուն առանց հաշվի առնելու օբյեկտիվ իրադրությունը, իրական
հնարավորությունները:
Սոցիալիզմի պատմությունը վկայում է, որ երկու սխալներն էլ դրսևորվել են,
երկուսի դեմ էլ պայքարն անհրաժեշտ է ու կարևոր: Առաջին սխալը հետևանք է
տեխնոկրատական աշխարհայացքի, սոցիալական շատ հաստատությունների գոր-
ծունեությանը ներհատուկ «կազյոննի-բյուրոկրատական ավտոմատիզմի» (Վ. Ի.
Լենին), դեմոկրատիայի սահմանափակումների: Երկրորդ սխալը հետևանք է լուսա-

---

ՄԻՐԶՈՅԱՆ ՎԱԼԵՐԻ ԱՐՄԵՆԱԿԻ— փիլիսոփայական գիտությունների թեկնածու, ՀՍՍՀ ԳԱ փիլիսոփայության և իրավունքի ինստիտուտի ավագ գիտաշխատող:



digitised by A.R.A.R.@

վորչական պատրանքների, յուրատեսակ բարոյախոսական իդեալիզմի, պրոպագանդայի վերափոխիչ հնարավորությունների գերագնահատման:

Սոցիալական և բարոյական փոփոխությունների սերտ շաղկապման, ներդաշնակման հարցն առավել կարևորվում է վերակառուցման ներկա փուլում, երբ այդքան սուր կերպով է դրված վերակառուցման խնդիրների գաղափարախոսական ապահովման պահանջը: Արդեն կատարված վերափոխումները վկայում են, որ վերակառուցման վիթխարի ծրագիրը չի կարող իրագործվել լոկ իրավական կամ տնտեսական նորամուծությունների շնորհիվ, այլ դրանք պիտի խորապես շոշափեն հասարակության յուրաքանչյուր անդամի ներաշխարհը, գործունեության դրդապատճառները, կյանքի իմաստի անձնական հայեցակետը, բարոյական արժեքները: Պատահական չէ, որ ՍՄԿԿ XXVII համագումարում «անցյալի պատասխանատու վերլուծությունից» քաղած «գլխավոր դաս» համարվեց կատարվելիք վերափոխումներում աշխատավորական զանգվածներին խորապես համոզելը, անձնապես շահագրգռելը, անձնական պատասխանատվության ձևավորումը: Պատահական չէ և այն, որ կուսակցական բոլոր վերջին փաստաթղթերում կարմիր թելի պես անցնում է նույն միտքը՝ վերակառուցումը ողջ ժողովրդի գործն է:

Ինքնին հասկանալի է, որ հասարակության բարոյական առողջացումը ոչ թե առանձին պրոբլեմ է, այլ բազմաբնույթ խնդիրների համակարգ: Այսպես, բարեխիղճ աշխատանքի հասարակական հեղինակության վերականգնումն ունի ոչ միայն տնտեսական և սոցիալական, այլև բարոյական նշանակություն: Նույն կերպ և դեմոկրատիայի ընդլայնումը ոչ միայն նպաստում է տնտեսական կյանքի աշխուժացմանը, այլև, շնորհիվ աշխատավորական կոլեկտիվի ինքնակառավարման, քննադատության և ինքնաքննադատության, հրապարակայնության ծավալման, նաև քաղաքացու արժանապատվության, պատասխանատվության, ինքնահարգանքի բարձրացմանը: 70-ական թվականներից մեզ ժառանգություն մնացած այնպիսի մի երևույթ, ինչպիսին «պահեստի համար աշխատանքն» է, այսինքն՝ չվաճառվող և պահեստներում կուտակվող անորակ արտադրանքի թողարկումը, վնասակար է ոչ միայն տնտեսապես, այլև բարոյապես: Հիրավի, չկա սոցիալական որևէ խնդիր, որի պատշաճ լուծումը չնպաստի հասարակության բարոյական առողջացման ընթացքին:

Այնուամենայնիվ, եթե փորձենք առանձնացնել ամենաէականը, ապա կարող ենք ասել, որ վերջին հաշվով, հասարակության բարոյական առողջացումը կենտրոնանում է անձի արժանապատվության վերականգնման շուրջը: Վերակառուցման միջոցով մեր հասարակությունը փորձում է կրկին դառնալ մարդակենտրոն, հանուն մարդու բարօրության գործող սոցիալական սիստեմ, այսինքն՝ դառնալ իրապես այն, ինչ նախկինում փաստորեն լոկ հռչակվել է, սակայն այդպես էլ իրականություն չի դարձել հետլենինյան շրջանում:

Իսկապես, շատ բան այն ամենից, ինչ այսօր վերակառուցման օրակարգում է (ասենք, ղեկավարների ընտրովիության սկզբունքը, կոոպերատիվ շարժման խթանումը, բյուրոկրատական ապարատի նկատմամբ վերահսկողության սահմանումը, հրապարակայնությունը և այլն) ու հաճախ ընկալվում է որպես բոլորովին նոր երևույթ, իրականում սոցիալիզմի այն մոդելի կարևորագույն բնութագծերն են, որ մեր առջև է հառնում Վ. Ի. Լենինի հետհոկտեմբերյան աշխատություններից: Մենք փաստորեն վերականգնում ենք, ընդսմին ոչ առանց բարդությունների, սոցիալական ջլաձգումների, այն ամենը, ինչ պիտի ներքնապես հատուկ լիներ սոցիալիստական հասարակությանը: Մի՞թե սոցիալիզմի բնականոն ընթացքը կարող էր հանգեցնել այն վիճակին, որ ներկայումս, սոցիալիստական հեղափոխության հաղթանակից 70 տարի անց, օրվա խնդիրն է «սովորել դեմոկրատիա»: Դառը խոստովանություն է սա, թեպետև այլ ուղի չկա, քան սերտել «ճշմարտության դասը»: Վերակառուցումը, իսկապես, այլընտրանք չունի:

Սովետական մարդկանց բարոյական, հոգեբանական վերակառուցումը, հասարակության բարոյական առողջացումը, մարդկային գործոնի ակտիվացումը, վերակառուցման մյուս բոլոր սոցիալական նպատակների կենսագործումը սկսվում է, կըրկնում ենք, յուրաքանչյուր քաղաքացու սեփական արժանապատվության, երկրի տիրոջ զգացումի, լիիրավ պատասխանատվության, ինքնահարգանքի վերականգնումից: Եվ հենց սա պիտի համարել վերակառուցման իրական ընթացքի գլխավոր չափանիշներից մեկը:

Մարքսիզմն ի սկզբանե հանդես է եկել աշխատավոր մարդկանց շահերի դիրքերից, ներդաշնակել է տեսական հարցադրումների խստիվ գիտականությունը և գործնական, ազատագրական քայլերի մարդասիրական ուղղվածությունը: Սոցիալիստական հասարակությունը, որպես մարքսիստական գաղափարների իրական մարմնավորում, պիտի գործի հանուն մարդու բարօրության: Սա է գլխավորը, վճռորոշը, մնացածն ածանցյալ է: Հենց այդ նպատակի իրականացումն է սոցիալիզմի օրոք ցանկացած սոցիալական հաստատության գործունեության, սոցիալական ռեֆորմների, մեր երկրում կատարվող վերափոխումների ողջ ծրագրի գլխավոր չափանիշը: Եվ սոցիալիզմի դեֆորմացիա տեղի է ունենում այնտեղ, որտեղ բացորոշ կամ քողարկված ոտնահարվում են մարդու շահերը, նրա իրավունքները ու արժանապատվությունը, երբ մարդը դիտվում է ոչ թե որպես հասարակության նպատակ, այլ միջոց այլ նպատակների համար:

Վերակառուցման ստրատեգիայի տեսակետից կարևոր է շեշտել այն որոշիչ հանգամանքը, որ սոցիալիզմը մարդկանց համատեղ կյանքի և աշխատանքի կազմակերպման այն ձևն է, որն անմտածելի է առանց իրենց իսկ՝ մարդկանց ակտիվության, ստեղծագործության, ինքնուրույնության, պատասխանատվության: Վ. Ի. Լենինը բազմիցս շեշտում էր, որ սոցիալիզմը ժողովրդական զանգվածների կենդանի ստեղծագործության արգասիքն է: Ուրեմն, գլխավոր հարցն այն է, թե ինչպե՞ս է եղել, որ տասնամյակներ շարունակ լավ չի օգտագործվել կամ նույնիսկ ուղղակի խեղվել է մարդկանց եռանդն ու ակտիվությունը, այլ կերպ ասած՝ աղավաղվել է սոցիալիզմի բուն էությունը:

Իսկապես, վերակառուցման և հատկապես հասարակության բարոյական առողջացման հարցերի կոնկրետ քննարկումը պետք է սկսել այն բանից, թե ի՞նչն է ամենից ավելի խոչընդոտել սոցիալիզմի էության դրսևորմանը, սոցիալիստական համակարգի հնարավորությունների և առավելությունների լրիվ բացահայտմանն ու անկաշկանդ օգտագործմանը: Ինչի՞ց է ամենից առաջ պասսիվացել մարդկային գործոնը, որո՞նք են այն հիմնական ուժերը, որ զրկում են մարդկանց նախաձեռնությունից, հանգեցնում հիասթափության ու անտարբերության, բարոյազրկում նրանց, վերածում կամազուրկ պտուտակների, հիմք դառնում սոցիալական անարդարությունների տարածման, սոցիալիզմի սկզբունքներից շեղումների: Ի՞նչն է ամենից առաջ կաշկանդում ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնությունը, կաթվածահար անում սոցիալական հաստատությունների գործունեությունը և ծաղրանկարային տեսք հաղորդում սոցիալիստական դեմոկրատիայի գործող ձևերին:

Այս հարցերի պատասխանը մեկն է՝ հասարակության կառավարման գործող սիստեմը: Վերակառուցման ամենալուրջ խոչընդոտը, որի հաղթահարումը պարտադիր է մեր բոլոր ցանկալի նպատակների իրագործման համար, բյուրոկրատիզմն է, թե՛ որպես սոցիալական հաստատությունների գործունեության եղանակ, պաշտոնյաների վարքագծի տեսակ, թե՛ որպես որոշակի հոգեբանություն, բարոյականություն, աշխարհայացք:

Իրոք, վերակառուցումն իր բուն էությամբ ուղղված է հասարակության դեմոկրատացմանը, աշխատավորների ստեղծագործական ակտիվության, ինքնուրույն, պատասխանատու գործունեության անկաշկանդ ծավալմանը, այնինչ բյուրոկրատիզմը մարդու պասսիվացման, նրա արժանապատվության ստորացման, տնտեսական ու քաղաքական ազատության կաշկանդման զազրելի ձև է: Վերակառուցումն ապագա է, բյուրոկրատիան (որպես սոցիալական երևույթ)՝ անցյալ, սակայն այն հզոր անցյալը, ցավոք, որի մասին կարելի է կրկնել՝ մեռածները բռնում են ողջերի ոտքերից: Հատկապես կառավարման ասպարեզում 70-ական թվականներին բնորոշ բյուրոկրատական ապարատի ինքնիշխանությունը, ավտորիտար ոճի ու վարչարարության չարաշահումը, սոցիալիստական դեմոկրատիայի փաստացի սահմանափակումները անխուսափելիորեն փակուղու առջև կանգնեցրին թե՛ տնտեսական կյանքի զարգացումը, թե՛ հոգևոր ոլորտը, թե՛ աշխատավորության ակտիվությունը:

Իհարկե, լճացման շրջանում քիչ լոզունգներ չկային՝ ուղղված ավելի ակտիվ աշխատանքին, ինքնուրույնությանը, գիտակցական կարգապահությանը, սոցիալիստական օրինականության ամրապնդմանը, դեմոկրատիայի ծավալմանը, սոցմրցության խթանմանը և այլն, սակայն առկա արգելակման մեխանիզմներն անհնարին էին դարձնում մարդկանց իրական ակտիվության դրսևորումը: Այսօր պարզ է, որ առերևույթ ակտիվության այդ կոչերը լոկ քողարկում էին մարդկանց պասսիվացման, անզորացման և, ընդհակառակը, բյուրոկրատիայի հզորացման ընթացքը: Լճացման ողջ գաղափարախոսությունը, դրա բոլոր դրսևորումներով հանդերձ, գիտության, արվեստի, պրոպագանդայի, դաստիարակչական աշխատանքների համակարգում խա-



digitised by A.R.A.R.@

ըսխված էր խոսքի և գործի խզման վրա: Իսկ առավել անցանկալին այդ իրողության անձնային ներքնայնացումն էր, դրան համապատասխան հոգեբանության ու բարոյականության ձևավորումը, երբ միլիոնավոր մարդիկ հաշտվել ու հարմարվել էին երկերեսանի քաղաքականությանը, երկատված սոցիալական կեցությանը:

Իրականացնել ՍՄԿԿ-ի ներկայիս կուրսը նախկին բյուրոկրատական մեթոդներով, նշանակում է խեղաթյուրել վերակառուցման էությունը, բավարարվել լոկ մակերեսային կամ ցուցադրական փոփոխություններով: Հիշեցնենք, որ ՍՄԿԿ XX համագումարի սկսած վերափոխումները թերատ մնացին ոչ միայն ղեկավարության անբավարար հետևողականության հետևանքով, այլև, հատկապես, պետական ու կուսակցական բյուրոկրատական ապարատի հզոր դիմադրության պատճառով: Եվ եթե 1985 թ. ապրիլից սկզբնավորված ռեֆորմների, նորացման, հասարակության բարեփոխման, ինքնամաքրման ընթացքը այսօր էլ լուրջ խոչընդոտների է հանդիպում, ապա պատճառը կրկին նույնն է՝ բյուրոկրատիայի դիմադրությունը:

Որո՞նք են բյուրոկրատիայի սոցիալական արմատները: Ամենից առաջ, իրական դեմոկրատիայի և հրապարակայնության պակասը, կառավարչական ապարատի ներամփոփ, ինքնիշխան բնույթը, որոշումների ընդունման գաղտնիությունը: Դժվար թե մենք այսօր կանգնած լինեինք Սևանա լճի պրոբլեմի առջև, եթե ժամանակին հասարակայնությանը հստակ տեղեկություն տրվեր, թե ինչ և ինչպես է նախատեսվում անել: Երևանի պատմական հուշարձանների մասին մեր հանրապետության ընթերցողը հարկադրված չէր լինի կարդալ առավելապես կենտրոնական մամուլում, եթե լճացման շրջանի կառավարչական ոճը հաղթահարված լիներ, հասարակական լայն շրջանները տեղյակ լինեին և ակտիվորեն մասնակցեին որոշումների ընդունմանը:

Բյուրոկրատիան ծաղկում է մարդկանց անիրազեկության, անտեղյակության, իրական ակտիվության սահմանափակման, համատարած սոցիալական անանունության և պատասխանատվության ցրման, նվաճումների և թերությունների իրական պատկերի աղավաղման, գործի և խոսքի խզման պայմաններում: 70-ական թվականների ամպագոռգոռ հաշվետվությունները, ըստ էության, խարսխված էին գաղտնիության և ընդհանուր անիրազեկության զուտ բյուրոկրատական զուգակցման վրա:

Բյուրոկրատիան անխուսափելիորեն ծնում է պաշտոնի գերմեծարում, պաշտոնյայի անառարկելիություն և մանավանդ՝ «առաջնորդի» մարգարեականության վերաբերյալ առասպելը, ուստի և պարարտ հող է ստեղծում անհատի պաշտամունքի ձևավորման համար: Ի. Վ. Ստալինի և Լ. Ի. Բրեժնևի օրինակները ապացուցում են պետական ու կուսակցական բյուրոկրատիայի այդ կարողությունը՝ գերմեծարել ղեկավարներին որպես սեփական գոյության և վերարտադրության խորհրդանշանի: Անտեսելով բյուրոկրատական ապարատի հզորությունը՝ մենք ստալինիզմը վերագրում ենք լոկ Ստալինին, գերագնահատում նրա անձնական հատկանիշների դերը անօրինականությունների մոլուցքի մեջ: Մինչդեռ, ո՛չ ստալինյան ռեպրեսիաներն են իրագործվել միայն Ստալինի կողմից, ո՛չ էլ լոկ Բրեժնևն էր լճացման շրջանի հեղինակը: Բյուրոկրատիայի առկայությամբ միշտ պահպանվում է սոցիալիզմի բյուրոկրատական խեղաթյուրումը՝ անհատի (կամ նրա զբաղեցրած պաշտոնի) պաշտամունքի ձևավորման վտանգը:

Ծարունակ վերարտադրվելով, բյուրոկրատական գործելակերպը և աշխարհայացքը հանգեցնում են նաև ապարատի ներսում մարդկային կոնկրետ հատկանիշների ձևավորմանը. խթանվում են գործարար ու բարոյական այն հատկությունները, որոնք անհրաժեշտ են բյուրոկրատիայի վերարտադրությանը: Դրա հետևանքով անձի բարեխիղճ աշխատանքն այլափոխվում է ղեկավարության կամքին հնազանդ վարքի, համարձակությունը՝ հաճոյակատարության, քննադատական միտքը՝ քծնանքի պատրաստակամության, գործարարությունը՝ թղթաբարության, ակտիվ կենսադիրքը՝ ակտիվության ձևացման և այլն: Նենգափոխվում են յուրաքանչյուր աշխատողի գնահատման սոցիալիստական սկզբունքները, հասարակական շահերը զոհաբերվում են «գործի շահերի» մասին դատողություններին, կոնկրետ մարդու նկատմամբ իրական սրտացավությունը փոխարինվում է ստորին նախնավորների անհոգի և մեծամիտ դեմագոգիայով:

Պատահական չէ, ուրեմն, որ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումի և կուսակցության XXVII համագումարի մշակած վերակառուցման ընդհանուր ծրագրի



digitised by A.R.A.R.@

կոնկրետացման առաջին քայլը եղավ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումում
կադրային քաղաքականության կատարելագործման հարցի քննարկումը: Դրան, ան-
կասկած, կանդրադառնա նաև առաջիկա XIX կոնֆերանսը: Կադրային քաղաքա-
կանությունը, հատկապես միջին և բարձր մակարդակների ղեկավարների ձևավորու-
մը, դրանց ընտրության պրակտիկան 70-ական թվականների ամենախոցելի տեղե-
րից մեկն է: Հովանավորչությունը, կաշառակերությունը, խնամառությունը, դեմո-
կրատիայի սահմանափակումները, հասարակական կարծիքի անտեսումը, գաղափա-
րաքաղաքական դաստիարակության թերությունները, կառավարման ստալինյան
մեթոդների իներցիան տասնյակ տարիներ հնարավորություն էին տվել անարժան
մարդկանց անարգել գրավելու բարձր ու պատասխանատու դիրք, օգտվելու չվաս-
տակած արտոնություններից ու առավելություններից:

Լճացումը, որպես իրական աշխատանքի կեղծում, կազմակերպական գործու-
նեության նենգափոխում հանդիսամոլությամբ, սկզբունքայնության վերածում պա-
տեհապաշտության, որպես բարոյական ֆորմալիզմի և սոցիալական դեմագոգիայի
համատարած մթնոլորտ, բարենպաստ է, հարկավ, հենց համապատասխան կադրա-
յին քաղաքականության, համապատասխան անձնային հատկանիշների տեր անձանց
բարգավաճման համար: Այնտեղ, ուր պետք է ոչ թե աշխատել, այլ կեղծել այն, ոչ
թե հաղթահարել դժվարությունները, այլ քողարկել դրանք, ոչ թե քննադատել, այլ
գովաբանել, անխուսափելիորեն ջրի երես պիտի դուրս գային ճարպիկ հարմարվող-
ները, քծնողները, դեմագոգները, պնակալեզները... Բոլորովին գաղտնիք չէ, որ
նրանցից շատերն այսօր էլ իրենց պաշտոնները չեն լքել, այլ զինվել-քողարկվել են
վերակառուցման տերմինաբանությամբ: Եվ սովետական հասարակության արմա-
տական վերակառուցման, հոգևոր ու բարոյական առողջացման ցանկալիից դանդաղ
ընթացքը պայմանավորված է ամենից առաջ այդ հանգամանքով, այսինքն՝ պետա-
կան և կուսակցական բյուրոկրատական ապարատի այն վերնախավի խոտորող առ-
կայությամբ, որի ներկայացուցիչները հոգով ու մարմնով լճացման հարազատ ար-
դյունքն են և որոնց բարգավաճումը կասկածի տակ է դրվում վերակառուցման մաք-
րագործող շնչի կողմից:

Իհարկե, եթե անձը ձգտում է բարձր պաշտոնի՝ դրա, առավել ևս մեր օրերում,
չհիմնավորված առավելություններից ու չարդարացված արտոնություններից օգտվե-
լու նպատակով, ապա դա մարդու բարոյական ձևախախտման ակնհայտ ապացույց
է: Սակայն միամտություն կլինի այս երևույթի դեմ պայքարում մնալ սոսկ բարոյա-
կան դաստիարակության շրջանակներում ու չտեսնել դրա սոցիալական հիմքերը:
Քանի դեռ հասարակությունն իր իսկ կառուցվածքով, սոցիալական հաստատություն-
ներն իրենց գործելակերպով, ինչպես նաև այնպիսի երևույթներ, ինչպիսիք են կա-
ռավարման գերկենտրոնացումը, պաշտոնյայի անպատժելիությունը, բյուրոկրատական
ապարատի ներամփոփ, ինքնիշխան բնույթը, օբյեկտիվորեն հնարավորություն են ըն-
ձեռում բարձր պաշտոնը ստորին նպատակներով օգտագործելու, պատվազուրկ ան-
ձինք միշտ էլ կձգտեն պաշտոնների: Բարոյախոսական քարոզով սոցիալական պրոբ-
լեմները չեն լուծվի: Բարձր պաշտոնը, պատասխանատու աշխատանքը, իշխանու-
թյունը չպետք է մատչելի լինեն բարոյապես տհաս մարդկանց, առավել ևս չպետք
է հնարավորություն ընձեռվի բարոյալքված պաշտոնյաներին՝ վարկաբեկելու սովե-
տական իշխանությունն ու կոմունիստական գաղափարախոսությունը, վերակառուց-
ման վեհ ու առաքինի գործը:

Կուսակցության ներկայիս ստրատեգիան միանգամայն հստակ է. հասարակա-
կան կյանքի դեմոկրատացումն ու տնտեսական ռեֆորմն են վերակառուցման բա-
նալին: Իրոք, առանց հասարակության բոլոր օղակների հետագա դեմոկրատացման,
մանավանդ՝ ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման նորանոր ձևերի ծա-
վալման, առանց ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնության իրական
ընդլայնման անկարելի է հաղթահարել սոցիալ-տնտեսական զարգացման արգելակ-
ները, բարոյական ինքնամաքրման խոչընդոտները, այդ թվում, ամենից առաջ, բյու-
րոկրատիայի դիմադրությունը: Ի վերջո, մեր հասարակության բարոյական առող-
ջացման գլխավոր միջոցը աշխատավորության ինքնակառավարման ընդլայնումն է՝
թե՛ ամբողջ ժողովրդի, թե՛ ցանկացած կոլեկտիվի ու յուրաքանչյուր անհատի մա-
կարդակում: Իրական դեմոկրատիան՝ ժողովրդաիշխանությունը, իրեն բնորոշ հրա-

պարակայնությամբ, բացախոսությամբ, քննադատության անկաշկանդ ծավալումով, սոցիալիստական սկզբունքների անխափան գործառնությամբ, տեղ չի թողնի բյուրոկրատիային, դրա բոլոր «բարեմասնություններով» հանդերձ:

Փաստն այն է, որ մեր հասարակությանը ներկայումս բնորոշ կառավարման կառուցվածքն առայժմ չի նպաստում ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնությանը, ուստի և՝ դեմոկրատիայի ընդլայնմանը, չի ձևավորում ավելի լավ աշխատելու կայուն մղումներ, սահմանափակում է մարդկանց ակտիվությունը, արգելակում բարոյական ինքնամաքրման ընթացքը: Հատկապես վտանգավոր ու կործանարար է կառավարման տարածքային մարմինների բյուրոկրատական ապարատի ներամփոփ բնույթը, տվյալ ռեգիոնի բոլոր հարցերի լուծման անսահմանափակ իշխանությունը, որոնք կարելի է, թերևս, բնութագրել որպես յուրօրինակ «տարածքային ֆեոդալիզմ»: Կառավարման նման համակարգն է բյուրոկրատիզմի և անարխիզմի այն զարմանալի զուգակցության արմատը, որին մենք բախվում ենք ամեն քայլափոխի: Իրոք, բյուրոկրատիան կաշկանդում է նորարարական ցանկացած շարժում, ամլացնում բարեփոխման ամեն մի ցանկություն, սակայն, միևնույն ժամանակ փաստացի անտերություն-անիշխանությունը (որպես անհամար «ֆեոդալների» գոյակցության անխուսափելի հետևանք) նպաստում է սոցիալիստական սկզբունքների աղավաղումներին, հակահասարակական խմբերի բարգավաճմանը, սոցիալական պրոցեսներին հաղորդում է բարձիթողի բնույթ:

Իրական դեմոկրատիան, անհատի կամ կոլեկտիվի իրական ինքնուրույնությունը, լիիրավ պատասխանատվությունը ենթադրում են նաև «սխալվելու» ու այդ սխալն ուղղելու, ինքնակառավարվելու հնարավորություն բառիս ամենալայն իմաստով: Այլապես, սոսկ արտաքուստ պարտադրվող վարքը, գործունեության մանրախույզ ռեգլամենտավորումը, վերադաս մարմիններին տրվող հաշվետվությունների հնացած, պահպանողական ձևերը, վերահսկող ու հաշվառող մարմինների ձևամոլությունը չեն կարող չզրկել գործող սուբյեկտին ինքնուրույնությունից: Ճշմարիտ ինքնակառավարման համար աշխատավորական կոլեկտիվը պետք է զերծ լինի բյուրոկրատական կապանքներից, ինքը տնօրինի նյութական և բարոյական բարիքների բաշխման, յուրաքանչյուր անդամի արդարացի վարձահատուցման ապահովման, արժանի ղեկավարի ընտրության և մյուս բոլոր հարցերը: Ներկայումս օրենսդրական նոր երաշխիքներ են տրված կոլեկտիվին, սակայն իրողությունն այն է, որ բարենպաստ հնարավորություններն առայժմ լիովին չեն օգտագործվում: Այստեղ, կարծում ենք, ամենից առաջ իրենց զգացնել են տալիս դեմոկրատական ավանդույթների պակասը, տասնամյակներ շարունակ խոսքի և գործի խզումը, սոցիալական անարդարություններին հետ լռել համակերպվելու հոգեբանությունը, վախը, սեփական կարծիքն անվարան հաղորդելու անկարողությունը և այլն:

Մեզ համար անգնահատելի դեր է խաղում լենինյան այն դասը, որ բարոյական, հոգեբանական վերակառուցումն անխզելի է ինքնուրույն, պատասխանատու աշխատանքից, որ նոր մտածելակերպ, նոր հոգեբանություն ձևավորելու, ներկայիս լեզվով ասած, մարդկային գործոնի ակտիվացման այլ ուղի գոյություն չունի: Հեղափոխության հաղթանակից հետո Վ. Ի. Լենինն ամենածանր խնդիրն էր համարում «սովորույթի ահռելի ուժի» հաղթահարումը՝ աշխատանքի, պետության, սեփականության նկատմամբ մարդկանց մեջ արմատավորված վերաբերմունքի վերափոխումը: Նույն ահռելի ուժն այսօր մեր առջև է կանգնած, 70-ական թվականները հեշտորեն անցյալ չեն դառնում: Ուստի մեզ նույնպես անհրաժեշտ է սթափ գնահատել հին, անցածի հոգեբանության երկարատև ու խանգարող ազդեցությունը և հատկապես մարդկանց հոգեբանական, բարոյական վերակառուցման, ողջ հասարակության բարոյական առողջացման տեսակետից մոտենալ հասարակության դեմոկրատացման քաղաքական ու սոցիալական արդյունավետությանը:

Բարոյական ինքնամաքրման ընթացքի հաջողության համար հարկավոր է վերջնականապես ազատվել մեր մտածողությանը տակավին բնորոշ, հասարակական կյանքում, սոցիալական զանազան հաստատությունների գործունեության մեջ զարմանալիորեն կայուն մի շարք բյուրոկրատական, տեխնոկրատական ստերեոտիպերից: Մասնավորապես, մարդկային արժանապատվության բյուրոկրատական նսեմացման, մարդկային գործոնի պասսիվացման առավել խոր ու քողարկված աշխարհայացքային



հիմնավորումներից մեկը «անփոխարինելի մարդիկ չկան» դրույթն է: Իհարկե, իր բովանդակությամբ սա մի ծեծված ճշմարտություն է, մարդ արարածի վախճանականության ձևակերպումներից մեկը: Սակայն ժամանակին այն օգտագործվել է փաստորեն որպես հիմք մարդու անկրկնելիության մերժման, դիմազրկման, անզոր մի «պտուտակի» զգացողության արմատավորման համար:

Սա մարդու պասսիվացման թերևս ամենադաժան ձևն է, մարդու բարոյազրկման առավել նենգ եղանակը, քանի որ իր նպատակին է հասնում ոչ թե անհատի վարքի արտաքին կաշկանդման, ակնհայտ բռնության, հարկադրանքի միջոցով, այլ նրա ինքնանվաստացման, ինքնառոբոտացման զազրելի ուղիով: Մարդկային արժանապատվության ամենախոր ստորացումը ոչ թե քաղաքական իրավազրկվածությունն է, տնտեսական ընչազրկությունը, անձնական ազատազրկվածությունը, այլ հենց սեփական «եսի» նկատմամբ նմանօրինակ անվստահությունը, սեփական ջանքերի ունայնության հետ համակերպումը:

Ներկայումս՝ մարդու պասսիվացման, ռոբոտացման, ինքնաբթացման հարաճուն վտանգի պայմաններում, հատկապես հակառակ պնդումն է ճշմարիտ հումանիստական՝ փոխարինելի մարդիկ չկան: Յուրաքանչյուր ոք անկրկնելի, ինքնօրինակ, եզակի, ուրույն մի աշխարհ է, որի կորուստը վերջնական է, անդառնալի: Եվ անգամ որպես արտադրության «գործոն», որպես գործող էակ, մարդն ավելին է, քան փոխարինելի, փոխարինվող տեխնիկական միջոցները: Անփոխարինելի են այն ներաշխարհը, ներքին այն հզոր կարողությունները, որ նիրհում են մեզանից յուրաքանչյուրի մեջ, և որոնց ծավալման ու զարգացման համար, ավաղ, սոցիալական միջավայրն ու տեխնոլոգիական հնարավորությունները միշտ չէ, որ բարենպաստ են: Եվ մարդը ոչ թե պետք է հաշտվի իր վաղանցիկության («փոխարինելիության») հետ, այլ գիտակցի սեփական «եսի» անկրկնելիությունը, եզակի լինելը և ձգտի ակտիվ ինքնահաստատման, ինքնիրագործման, ինքնաճանաչման: Հենց նման գիտակցության ձևավորումն էլ պիտի դառնա մարդկային գործոնի ճշմարիտ մարդասիրական իմաստավորման հիմնաքարը, հասարակության իրական դեմոկրատացման ու բարոյական առողջացման գլխավոր ապացույցը: Բյուրոկրատները պարզապես չեն կարող գոյատևել այնտեղ, որտեղ յուրաքանչյուր ոք օժտված է քաղաքացու բարձր արժանապատվությամբ, քաջատեղյակ է սեփական իրավունքներին, գրավում է ակտիվ սկզբունքային կենսադիրքորոշում:

Ինչպես վերակառուցման մյուս բոլոր նպատակների կենսագործման, այնպես էլ հասարակության բարոյական առողջացման մեջ կարևոր է խուսափել ծայրահեղություններից և ճիշտ զուգակցել օբյեկտիվ փոփոխությունները, այդ թվում և բյուրոկրատիայի դեմ տնտեսական ու կազմակերպական պայքարը հոգեբանական, բարոյական վերակառուցման, նոր մտածելակերպի ձևավորման, դաստիարակչական աշխատանքների հետ: Չի կարելի թերագնահատել մարդկանց ներաշխարհի, սոցիալական դիրքորոշման, բարոյական նորմերի, ակտիվության զանազան դրսևորումների դերը սովետական հասարակության ցանկացած խնդրի լուծման գործում, այլապես մենք կարող ենք բախվել սոցիալական հարցերի նկատմամբ տեխնոկրատական, բյուրոկրատական մոտեցումների ուժեղացմանը, ողջ վերակառուցման բյուրոկրատական խեղաթյուրման վտանգին: Չի կարելի նաև գերագնահատել սուբյեկտիվ գործոնի դերը, քանի որ դա հղի է վոլյունտարիստական սխալներով, ուտոպիստական հարցադրումներով, օբյեկտիվ հնարավորությունների հաշվառման անկարողությամբ: Միայն ճիշտ համադրելով օբյեկտիվ վերափոխումները և հոգեբանական վերակառուցումը կարելի է ապահովել ՍՄԿԿ-ի ներկայիս կուրսի ներդաշնակ ընթացքը:

Վերակառուցումն ահռելի ծանրության խնդիր է: 70-ական թվականների արգելակման մեխանիզմները և, ամենից առաջ, դրանցից ամենահզորը՝ բյուրոկրատիզմը մեկեն չեն հաղթահարվի: Անցյալի սխալները չկրկնելու, հավասարակշռված, հետևողական ու նպատակասլաց քաղաքականության ապահովման նպատակով հույժ անհրաժեշտ է իրատեսորեն գնահատել, թե ինչ տիտանական աշխատանք է սպասում մեզ ինքնամաքրման ճանապարհին:

Այնուամենայնիվ, ինչպիսին էլ որ լինի վերակառուցման ընթացքը, ինչ դժվարություններ էլ որ ստիպված լինի հաղթահարելու սովետական հասարակությունը, պարզ է, որ վերադարձ դեպի նախկինը, դեպի լճացում անհանդուրժելի է: Հենց այդ



digitised by A.R.A.R.@

անհողդողդ վճռականությամբ է ձեռնամուխ եղել ՍՄԿԿ-ն վերակառուցման միթխարի ծրագրի իրականացմանը:

Օրեցօր փոխվում է մեր շրջապատը՝ սոցիալական իրողությունը և մարդկանց վարքուբարքը: Այժմ հենց մեզանից յուրաքանչյուրից է կախված, թե ինչպիսին կլինի ապագան՝ թե՛ որպես իրականություն, թե՛ որպես հոգեբանություն, բարոյականություն, աշխարհայացք: Համենայն դեպս, պարզ է մի բան. սովետական մարդկանց ժամանակակից սերունդը մուտք է գործում կյանք որակապես նոր պայմաններում: Ավագ սերունդներից շատ բան է կախված, թե ինչպիսին կլինի սովետական երիտասարդությունը, ուրեմն և՝ վերակառուցման վաղվա օրը:

Մեր խնդիրն է՝ ձևավորել մարդիկ, որոնք օրգանապես կմերժեն խոսքի և գործի խզումը, որոնք ոչ թե կհամակերպվեն լճացմանը, այլ իրենց ակտիվ սոցիալական դիրքորոշմամբ, սկզբունքայնությամբ և համարձակությամբ, իրենց մտածելակերպով ու գործելակերպով թույլ չեն տա լճացման կրկնություն: Մարդիկ, ովքեր կլինեն ոչ թե առաջնորդների «մարգարեությունների» հնազանդ կատարողները, ոչ թե անզոր պտուտակներ, այլ արժանապատվությամբ գործող, իրենց լիիրավ պատասխանատու զգացող քաղաքացիներ: Մարդիկ, ովքեր կարիք չեն ունենա այլևս բարոյական ու հոգեբանական վերակառուցման հիվանդագին ընթացքի, քանի որ նրանք կհասունանան ոչ թե դոգմատիզմի տիրապետության պայմաններում, այլ իրական դեմոկրատիայի, ինքնակառավարման, սոցիալիստական պլյուրալիզմի, հոգեպես ու բարոյապես առողջ հասարակության, ուստի և օժտված կլինեն ազատ, ինքնուրույն ստեղծագործ մտածելակերպով, կլինեն, մի խոսքով, վերակառուցման օրինական ժառանգորդը և սովետական մարդկանց լավագույն ավանդույթների արժանի շարունակողը:

---



# ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅԱՆ ՆԵՐԳՈՐԾՈՒՆՈՒԹՅՈՒՆԸ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՊԱՅՄԱՆ Է

**Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ**

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ վերահսկողությունը և ընդունված որոշումների կատարման ստուգումը միշտ համարել է կազմակերպական աշխատանքի կարևորագույն մասը, ղեկավարման լենինյան ոճի բնորոշ գիծը: ՍՄԿԿ XXVII համագումարը մեկ անգամ ևս ուշադրություն հրավիրեց ընդունվող որոշումների և պլանների գործնական կատարման նկատմամբ վերահսկողությունն ուժեղացնելու անհրաժեշտության վրա: «Մեր առաջընթացի համեմատ,— նշվում է ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման առթիվ համագումարի բանաձևում,— վերահսկողության կազմակերպումը պետք է հետզհետե է՛լ ավելի մեծ տեսակարար կշիռ գրավի աշխատանքում» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 165):

Սովետական երկրում վերահսկողության մարմինների կազմավորումն ու զարգացումը անխզելիորեն կապված են Վ. Ի. Լենինի անվան հետ: Մշակելով սոցիալիստական հեղափոխության, սոցիալիստական ու կոմունիստական շինարարության տեսության և պրակտիկայի հարցերը՝ Վ. Ի. Լենինը վիթխարի նշանակություն էր տալիս վերահսկողությանը: Հոկտեմբերի նախօրեին նա գրում էր. «Հաշվառում և վերահսկողություն՝ ահա այն **գլխավորը,** որ պահանջվում է կոմունիստական հասարակության **առաջին փուլը** «կարգավորելու», նրա կանոնավոր գործունեության համար» և որ «Մինչև այն ժամանակ, երբ կգա կոմունիզմի «բարձրագույն» փուլը, սոցիալիստները **ամենախիստ** վերահսկողություն են պահանջում հասարակության ու **պետության կողմից** աշխատանքի չափի ու սպառման չափի վրա...» (**ԵԼԺ,** հ. 33, էջ 129, 124): Եվ Վ. Ի. Լենինը անմիջական մասնակցություն էր ունենում սովետական պետության վերահսկողական մարմինների ստեղծմանը, նրանց գործունեությունը բնորոշող կարևորագույն փաստաթղթերի մշակմանը: Ժողտնտխորհի նախագահի պաշտոնում հենց առաջին օրը առաջնորդը գրեց բանվորական վերահսկողության կանոնադրության նախագիծը: Բանվորական վերահսկողությունը սովետական իշխանությանն օգնեց ընկճել կապիտալիստների սաբոտաժը, կարգավորել ժողովրդական տնտեսության վիճակը: Այն վճռական դեր խաղաց արդյունաբերության ազգայնացում անցկացնելու և բանվորներին պետության ու հանրային արտադրության գործերը կառավարելու արվեստը ուսուցանելու գործում:

Վ. Ի. Լենինը, կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը անդուլ աշխատանք են տարել սովետական պետության վերահսկողական մարմինների կենտրոնացված համակարգ ստեղծելու համար: Առանձնահատուկ նշանակություն ունի առաջնորդի ստորագրած՝ ժողտնտխորհի 1918 թ. հունվարի 18 (31)-ի դեկրետը «Կենտրոնական վերահսկիչ կոլեգիա» տեղական հաշվառման-վերահսկիչ կոլեգիաներ և վերահսկիչ հանձնաժողովներ ստեղծելու մասին»: Այդ դեկրետով դրվեց ամբողջ երկրում միասնական վերահսկողական մարմինների ստեղծման փաստացի սկիզբը, մարմիններ, որոնց 70-ամյակը վերջերս նշեց մեր երկիրը: Այդ մարմինները կուսակցության սուր զենքը դարձան կառավարման ապարատը կատարե-

---

ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ ԳԵՐԱՍԻՄ ԱՐԱՄԱՅԻՍԻ— ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամության թեկնածու, Հայկական ՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեի նախագահ:



digitised by A.R.A.R.@

լագործելու, բյուրոկրատիզմն ու քաշքշուկը, իշխանության չարաշահումներն արմատախիլ անելու համար մղվող պայքարում:

Սոցիալիստական վերահսկողության զարգացման լենինյան ժամանակաշրջանը այսօր մեզ համար վիթխարի արժեք է ներկայացնում: Այն ուսանելի է իր հետևություններում կոնկրետ պատմական իրավիճակի վերլուծության վրա հենվող մարքսլենինյան դիալեկտիկայի ուժով, համարձակ ու նորարարական մոտեցմամբ կուսակցական և պետական շինարարության խնդիրների լուծմանը:

Այնուհանդերձ, Վ. Ի. Լենինից հետո վերահսկողության մարմինների պատմությունը բարդ ու հակասական եղավ: Վերահսկողությունը, ինչպես այն Լենինն էր ըմբռնում, շատ բանով սկսեց կորցնել իր դերը: Այժմ մեզ շատ ավելի հասկանալի են 1934 թվականի սկզբներին ԿՎՀ—ԲԳՏ-ի վերացման պատճառները: Իրենց էությամբ ու ոգով լինելով ստեղծագործական, մասսաների նախաձեռնության վրա հենվող մարմիններ՝ նրանք չէին համակերպվում այն ժամանակ երկրում արդեն հաստատված կառավարման վարչակարգադրական մեթոդների հետ:

Վերահսկողության համակարգը հետագայում անարդյունավետ, ավելորդ ու մանրատված դարձավ: Այն սկսեց պարփակվել գերատեսչական և տեղայնական շահերի շրջանակում, հաճախ կախված էր այն կազմակերպություններից և անձանցից, որոնց կոչված էր վերահսկելու: Այդ պայմաններում սկսեցին գլուխ բարձրացնել գերատեսչականությունը, փոխպաշտպանությունը, հովանավորչությունը, ցուցամոլությունն ու աչքակապությունը: Սկսեցին գոյանալ վերահսկողության համար արգելված գոտիներ, անում էր առանձին ղեկավար աշխատողների ձգտումը՝ դուրս մնալու վերահսկողությունից և քննադատությունից: Լավ հայտնի է, թե այդ ամենը երկրում ինչպիսի ծանր հետևանքների հանգեցրեց և որքան թանկ գնով է հարկ լինում դրա դիմաց վճարել: Այդ մասին խոսվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումում, XXVII համագումարում, ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան և հունիսյան պլենումներում, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 70-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի զեկուցման մեջ:

1985 թվականի ապրիլը սկիզբ դրեց մեր կուսակցության և կառավարության կյանքում նոր փուլի՝ ամեն ինչում լենինիզմի ստեղծագործական ոգու իսկական վերածննդին: Կենտկոմի պլենումի որոշումներն իրենց մասշտաբներով ու էությամբ խոշոր շրջադարձ նշանավորեցին դեպի երկրի ու նրա առանձին ռեգիոնների սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը, հասարակության բարոյական մաքրումը և նորացումը: ՍՄԿԿ Կենտկոմի նախաձեռնությամբ սկսված վերակառուցումը, հիրավի, հեղափոխական բնույթ է ընդունել:

Ներկայումս սկսվել է վերակառուցման պատասխանատու և բարդ փուլը: Ծանրության կենտրոնը տեղափոխվում է պրակտիկ գործունեության ոլորտը: Այն ամենը, ինչ նախանշել է կուսակցությունը, անհրաժեշտ է կենսագործել: Վերակառուցումը, դեմոկրատացումը նորովի են դրել նաև վերահսկողության հարցը: Կուսակցությունը պահանջում է ամբողջ վերահսկողական աշխատանքը ենթարկել համապետական շահերին, բարձրացնել դրա ներգործունեությունը, ժողովրդական վերահսկողությունը վերածել նոր հասունացած հարցերի բացահայտման միջոցի, մասսաներին պետության ու հասարակության գործերի ինքնակառավարման պրոցեսի մեջ ներգրավելու կարևորագույն ձևերից մեկի: Խնդիր է առաջադրված՝ լիովին վերականգնել սոցիալիստական վերահսկողության լենինյան սկզբունքը, որը լայն դեմոկրատիզմը զուգակցում է կուսակցական ղեկավարման հետ: Եվ օրինաչափ է, որ ինչպես ՍՄԿԿ Կենտկոմում կայացած հանդիպման ժամանակ 1988 թ. հունվարի 8-ի ելույթում նշեց ընկ. Մ. Ս. Գորբաչովը, երկրում վերահսկիչ մարմինների կատարելագործման մասին հարցը կներկայացվի XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի քննարկմանը:

Հայաստանի կոմկուսի ղեկավարությամբ, հանրապետության վերահսկողության մարմինները նույնպես էական ավանդ են ներդնում էկոնոմիկայի զարգացման, սոցիալիստական հասարակարգի վերակառուցման գործում: Այսօր նրանց կազմում կան սովետների կողմից ստեղծված 55 կոմիտեներ, որոնցում ներգրավված են պետական մարմինների ու հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչներ, բանվորներ, կոլտնտեսականներ, ծառայողներ, գիտության ու կուլտուրայի գործիչներ, մասսայական ինֆորմացիայի միջոցների աշխատողներ և ժողովրդական վերահսկողության մարմինների ակտիվիստներ: Ժողովրդական տնտեսության զանա-



զան բնագավառների շուրջ չորս հազար բանվորներ, կոլտնտեսականներ, մասնագետներ այդ կոմիտեների արտահաստիքային ապարատն են կազմում: Հանրապետությունում ժողովրդական վերահսկողության հասարակական հիմքն են շուրջ 10 հազար խմբերը, որոնք ընտրվել են աշխատավորների կոլեկտիվների կողմից և ընդգրկում են ավելի քան 109 հազար ժողովրդական վերահսկիչներ:

ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումից հետո հանրապետությունում որոշակի քայլեր են արվել վերահսկողության ներգործունության ուժեղացման, կոմիտեների, խմբերի, ժողովրդական վերահսկիչների աշխատանքի ակտիվացման բնագավառում: Նրանք սկսել են ավելի շատ ուշադրություն նվիրել պլանների ու առաջադրանքների կատարման նկատմամբ վերահսկողությանը, արտադրության ռեզերվների բացահայտմանը, խնայողության ռեժիմի կիրառմանը, անտնտեսվարության, բացասական երևույթների դեմ տարվող պայքարին: Ամրապնդվել են ժողովրդական վերահսկողության մարմինների և խմբերի կապերը կուսակցական կոմիտեներին ու կազմակերպություններին առընթեր վերահսկիչ հանձնաժողովների, սովետների մըշտական հանձնաժողովների ու դեպուտատական խմբերի, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, ֆինանսական և իրավապահ մարմինների հետ: Նկատելիորեն բարձրացել է պահանջկոտությունը զանազան խախտումներ կատարած ղեկավարների նկատմամբ: Դրսևորած անկարգապահության, անտնտեսվարության, ծառայողական դիրքի չարաշահման համար կոմիտեները ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ.
ապրիլյան պլենումից հետո անցած երեք տարում պատասխանատվության են են-
թարկել մեծ թվով պաշտոնատար անձանց, որոնցից 220-ը հեռացվել են զբաղեցրած
պաշտոնից, 2,4 հազար մարդ ենթարկվել են դրամական տուժագրումների՝ շուրջ 550
հազար ռուբլի գումարով, ավելի քան 200 ստուգումների նյութերն ուղարկվել են
դատախազության մարմիններ:

Դրա հետ մեկտեղ պետք է ընդունել, որ ժողովրդական վերահսկողության մար-
մինների աշխատանքում կան էական թերություններ: Ժողովրդական վերահսկողու-
թյան շատ կոմիտեներ երբեմն աչքաթող են անում իրենց ռեգիոններում եղած լուրջ
խախտումները, հաճախ քննադատաբար չեն գնահատում իրավիճակը, շրջանցում
են «սուր անկյունները», լիբերալ վերաբերմունք են ցուցաբերում պետական կարգա-
պահությունը խախտողների նկատմամբ: Մի շարք կոմիտեներ չեն կարողանում
ճիշտ որոշել վերահսկողության համար կարևոր աշխատանքի տեղամասերը, ցածրո-
րակ են անցկացնում ստուգումները, սիստեմատիկ հսկողություն չեն իրականացնում
ընդունված որոշումների կատարման ընթացքի նկատմամբ, որոնց հետևանքով չեն
վերացվում բացահայտված շատ թերություններ: Որոշ կոմիտեներ լիբերալիզմ են
ցուցաբերում պետական կարգապահությունը խախտած պաշտոնատար անձանց
գործունեությանը գնահատական տալիս:

Էական թերություններ կան ժողովրդական վերահսկողության խմբերի աշխա-
տանքում: Ունենալով մեծ հնարավորություններ, գործելով աշխատավորական կո-
լեկտիվներում՝ նրանցից շատերը չեն դրսևորում ակտիվություն ու սկզբունքայնու-
թյուն: Ամենևին ոչ բոլոր խմբերն են պայքարում բացասական երևույթների, ինքնա-
կամության, հովանավորչության, թույլ կարգապահության դեմ: Նրանց երբեմն պա-
կասում են մարտունակությունը, ժողովրդական վերահսկիչների գործունեությունն ակ-
տիվացնելու հմտությունը: Շատ վերահսկիչներ համակերպվել են խախտումներին ու
թերություններին, անտարբեր դարձել դրանց նկատմամբ, խմբերի և ժողովրդական
վերահսկիչների աշխատանքում պակասում է հրապարակայնությունը, գերիշխում
է «աղբը տնից դուրս չհանելու» մտայնությունը:

ՀՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեն միջոցներ է ձեռնարկում բարձ-
րացնելու հանրապետության ժողովրդական վերահսկողության մարմինների պա-
տասխանատվությունն իրենց աշխատանքի արդյունքների համար, կոմիտեներից,
խմբերից պահանջում է կատարելագործել վերահսկողության կազմակերպումն այն
հաշվով, որ ուժեղացվեն դրա պրոֆիլակտիկ միտվածությունն ու ներգործունությունը:

Ժողովրդական վերահսկողության մարմինների աշխատանքի վերակառուցումը
տեմպ է հավաքում: Տեղի է ունենում նոր պայմաններում՝ վերահսկողական գործու-
նեության ուժեղացման փորձի վերաիմաստավորում: Դրա հիմնական նպատակն այն
է, որ ապահովվի վերահսկողության ավելի մեծ արդյունավետություն, միաժամանակ
առավելագույն չափով պարզեցվի դրա կազմակերպումը: Ուժի մեջ մտած «Պետա-
կան ձեռնարկության (միավորման) մասին օրենքը», ինչպես հայտնի է, վերակառուց-
ման կենտրոնում է դրել աշխատավորական կոլեկտիվը: Դա, բնականաբար, պահան-



digitised by A.R.A.R.@

ջում է էական փոփոխություններ նաև արտադրությունում, աշխատավորական կոլեկտիվում վերահսկողության կազմակերպման գործում: Խոսքն այն մասին է, որ նշանակալիորեն պետք է բարելավվի ժողովրդական վերահսկողության յուրաքանչյուր խմբի աշխատանքը, ապահովվի դրանում յուրաքանչյուր ժողովրդական վերահսկիչի ակտիվ մասնակցությունը:

Ներկայումս ձեռնարկություններում համանման վերահսկողական ֆունկցիաներով են օժտված կուսակցական, արհմիութենական և այլ հասարակական կազմակերպությունների բազմաթիվ մշտական հանձնաժողովներ, ժողովրդական վերահսկողության կոմիտեները և խմբերը: Պատահում է, գործարանում կամ միավորումում վերահսկողության այս կամ այն տեսակներն իրականացնելու կոչված հասարակական կազմավորումներում ընդգրկված է լինում աշխատավորական կոլեկտիվի անդամների մինչև կեսը: Ստուգումներ շատ են անցկացվում, գործից կտրվում են տասնյակ ու հարյուրավոր մարդիկ, իսկ դրանից շոշափելի արդյունք չի ստացվում:

Այդ վիճակը վերացնելուն ուղղված բազմաթիվ առաջարկություններ են ստացվում, որոնց իմաստն, ըստ էության, հանգում է միասնական մի կարծիքի՝ ձեռնարկություններում, կազմակերպություններում արտադրական և ֆինանսատնտեսական գործունեության նկատմամբ հասարակական վերահսկողությունը կենտրոնացնել միասնական մարմնում՝ նրան օժտելով համապատասխան լիազորություններով: Այդպիսի փորձեր, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների համաձայնությամբ, ներկայումս անցկացվում են 43 աշխատավորական կոլեկտիվներում: Մի շարք կոլտնտեսություններում փորձի կարգով միավորվել են նրանց վերստուգիչ հանձնաժողովների և ժողովրդական վերահսկողության խմբերի ֆունկցիաները: Առանձին աշխատավորական կոլեկտիվներում իրականացվում է ժողովրդական վերահսկողության խմբերի ու պոստերի խոշորացում, դրանց կառուցվածքի պարզեցում: Նման փորձերի դրական արդյունքների դեպքում դրանց տարածումը հնարավորություն կտա մեկ մարմնում, հասարակական կազմակերպությունների առաջադրած ներկայացուցչությունների հիման վրա, միավորել առավել գործիմաց, սկզբունքային ու հեղինակավոր մարդկանց: Դա նշանակալիորեն կուժեղացնի վերահսկողության արդյունավետությունը ստորին օղակում, աշխատավորական կոլեկտիվում և, միաժամանակ, զգալիորեն կկրճատվի ստուգումների քանակը:

Երկրում ամբողջական վերահսկողական համակարգի ստեղծումը ենթադրում է ժողովրդական վերահսկողության նաև պետական օղակի վերակառուցում: Խոսքը քաղաքային, շրջանային և արտադրական կոմիտեների աշխատանքի նշանակալի բարելավման, իրենց ռեգիոնների սոցիալ-տնտեսական զարգացման արագացման գործում նրանց դերի բարձրացման մասին է: Կատարելով ՀԿԿ Կենտկոմի 1987 թ. հուլիսյան և դեկտեմբերյան պլենումների ցուցումները՝ մենք միջոցներ ենք ձեռնարկում, որպեսզի հանրապետության ժողովրդական վերահսկողության համակարգը գործի ավելի ակտիվորեն, ձեռնամուխ լինի խոշոր սոցիալ-տնտեսական պրոբլեմների լուծմանը և, ինչպես ասել է Մ. Ս. Գորբաչովը, թույլ չտա բարեհոգաբար հանդուրժելու այն ղեկավարներին, որոնք դադարել են պետական գործերի մասին հոգալուց:

Գլխավորը, որին ուղղված են ջանքերը, կոմիտեների և խմբերի գործունեությանը նպատակամղվածություն և հետևողականություն հաղորդելն է այն հաշվով, որ ամեն մի գործում, որին նրանք ձեռնամուխ են լինում, դրական արդյունքներ ստացվեն: Նրանք պետք է ուժեղացնեն վերահսկողությունը ձեռնարկությունների կողմից պայմանագրային պարտավորությունները և արտադրանքի կարևորագույն տեսակների պետական պատվերները կատարելու նկատմամբ, որը տնտեսական ռեֆորմի հաջող իրականացման գրավական կլինի: Այդ հարցերը մեր ուշադրության կենտրոնում են: Ահա բազմաթիվ օրինակներից մեկը: ՍՍՀՄ և ՀՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեներն անցյալ տարվա վերջերին ստուգեցին պայմանագրային կարգապահության և արտադրանքի պետընդունման կազմակերպման վիճակը Երևանի Ջերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում: Ստուգմամբ բացահայտվեցին լուրջ թերություններ: Ապրանքային արտադրանքի թողարկման 1987 թ. 11 ամիսների պլանն այստեղ կատարվել էր 63,9, արտադրանքի մատակարարման պարտավորությունը՝ 76,6 տոկոսով, չէր առաքվել 7,2 միլիոն ռուբլու արտադրանք, որի համար վճարվել էր 278 հազար ռուբլի տուգանք: Ձեռնարկությունում անբավարար են զբաղվում թողարկվող արտադրանքի որակի բարելավման հարցերով: Էական վերակառուցման կարիք ունի պետընդունման մարմնի աշխատանքը: Կոմիտեն խստիվ պատժեց մեղավորներին: Ձեռնարկությունում մշակվել են թերությունների վերացման մի շարք միջոցառումներ:



Հանրապետության ժողովրդական վերահսկիչների ուժերի գործադրման ոլորտ են գիտատեխնիկական առաջադիմության, արտադրության վերակառուցման ու վերազինման, տեխնիկական մակարդակի և արտադրանքի որակի բարձրացման պրոբլեմները: Կուսակցությունը հայրենական ինդուստրիայի պատմության մեջ աննախադեպ խնդիր է առաջադրել՝ մոտակա 6—7 տարում կարևորագույն մեքենաների, սարքավորումների ու սարքերի պարամետրերով հասնել համաշխարհային բարձրագույն մակարդակի: Առանց այդպիսի որակական թռիչքի ժողովրդական տնտեսության ինտենսիվացման ամբողջ ծրագիրը կարող է ձախողման վտանգի տակ մնալ: Հանրապետական կոմիտեի 1987 թ. հոկտեմբերի նիստում քննարկեցինք մեքենաշինական ձեռնարկություններում գիտության ու տեխնիկայի զարգացման պետական պլանի կատարման վիճակի ստուգման արդյունքները: Պարզեցինք, որ այդ գործում կան լուրջ թերություններ: Մեքենաշինական մինիստրությունների ձեռնարկությունների մեծ մասը (Լենինականի սառնարանային կոմպրեսորների և էլեկտրակենցաղային սարքերի, Կիրովականի «Ավտոմատիկա», Երևանի «Հաստոցանորմալ» գործարաններ, «Հայավտո» ա/մ և այլն) 1986 և 1987 թվականներին չի ապահովել գիտության ու տեխնիկայի զարգացման պետական պլանի կատարումը: Նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի անբավարար արմատավորման հետևանքով ցածր են մեքենաշինական արտադրանքի տեխնիկական մակարդակը և որակը, այն դեռևս անմրցունակ է: Շատ ձեռնարկություններում դանդաղ է նորացվում արտադրանքի տեսականին: Ավելի քան 10 տարի առաջ թողարկվել սկսած արտադրանքի տեսակարար կշիռը 1988 թ. ընդհանուրի մեջ կազմում էր միջին հաշվով 28,2 տոկոս, այդ թվում Երևանի ավտոմոբիլային գործարանում՝ 100, «Կամնկաբելում»՝ 77,2 տոկոս և այլն: Էլեկտրատեխնիկական և հաստոցաշինական ձեռնարկություններում ծայրահեղ դանդաղ են տեխնոլոգիական սարքավորումների հավաքակազմի նորացման տեմպերը:

Կոմիտեն ընդունեց ստուգումներով բացահայտված թերությունների վերացմանն ուղղված գործնական որոշում, որի կատարումը հսկողության տակ է: Ժողովրդական վերահսկողության հանրապետական, քաղաքային ու շրջանային կոմիտեները, տեղական խմբերն ու պոստերը ձգտում են էապես բարելավել վերահսկողությունը արդյունաբերությունում, հատկապես մեքենաշինական համալիրում՝ այն համարելով իրենց կարևորագույն խնդիրը:

Վերահսկողական աշխատանքի նախընտրելի ուղղություններում հատուկ տեղ է տրվում սոցիալական ոլորտին, որն անմիջականորեն շոշափում է մարդկանց ամենակենսական շահերը: Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, միայն ուժեղ սոցիալական քաղաքականությունը կարող է ապահովել վերակառուցման ամբողջ գործի հաջողությունը: Ահա թե ինչու բնակչության բնակարանային ապահովման, առողջապահության ու կրթության վերակառուցման, դրամական շրջանառության ու ֆինանսների ամրապնդման նկատմամբ ծառայությունների ոլորտի զարգացման, արդյունավետ հսկողությունը պետք է կարևորագույն գործ լինի վերահսկողության կոմիտեների և խմբերի համար:

Վերջին ժամանակներս, շնորհիվ կուսակցության ու կառավարության ձեռնարկած միջոցների, առավել կայուն զարգացման ուղու վրա է կանգնում երկրի գյուղատնտեսությունը: Հետևաբար, հարկավոր է ավելի ներգործուն վերահսկողություն իրականացնել գյուղատնտեսական արտադրանքի պահպանության ու վերամշակման նկատմամբ: Դրա կորուստները մեծ չափերի են հասնում: Շատ են փչանում բանջարեղեն, պտուղներ և կարտոֆիլ դեպի վաճառասեղան և գնորդին հասցնելու ճանապարհին: Այդ կորուստների կրճատումը պարենային ռեսուրսների առավել արագ և շոշափելի հավելման ուղի է: Այդ հանգամանքը հաշվի առնելով՝ ժողովրդական վերահսկիչները արդյունավետ հսկողություն են իրականացնում աճեցված բերքի հավաքման, փոխադրումների, իրացման, վերամշակման, պահպանության նկատմամբ: Այս հարցերը նույնպես եղել են մեր ուշադրության կենտրոնում: Տարիներ շարունակ, ՀԼԿԵՄ Կենտկոմի և ՀՍՍՀ ներքին գործերի մինիստրության հետ համատեղ, բերքահավաքի ընթացքում անցկացնում ենք ստուգատես: 1987 թվականին ստուգատեսի արդյունքները մի քանի անգամ քննարկվել են հանրապետական, քաղաքային և շրջանային կոմիտեների նիստերում:

Բերքահավաքը անբավարար կազմակերպելու, անտնտեսվարության, գյուղմթերքների փչացման ու կորստյան փաստերի համար ժողովրդական վերահսկողության



digitised by A.R.A.R.@

մարմինները և ՀՍՍՀ պետագրոարդի կոմիտեն պատասխանատվության են ենթարկել 310 պաշտոնատար և այլ անձանց, այդ թվում 57-ը հեռացվել է զբաղեցրած պաշտոններից, 253-ի նկատմամբ կիրառվել են կարգապահական տույժեր: Ստուգատեսի արդյունքներով ներքին գործերի մարմինները հարուցել են 208 քրեական գործ:

Ստուգատեսը բացահայտեց նաև մի շարք չլուծված հարցեր, որոնց վերաբերյալ կոմիտեն իր առաջարկությունները ներկայացրեց հանրապետության կառավարությանը:

Մի շարք ստուգումներ նվիրվել են ձմռանը պահպանության դրված պտուղ-բանջարեղենի, խաղողի, կարտոֆիլի վիճակին: Չնայած հանրապետությունում դրանց արտադրանքի բավարար քանակությանը, երկարատև պահպանության դնելու պլանները 1987 թվականին չկատարվեցին, էական թերություններ կան ձմռանը օգտագործելու համար արտադրանքի պահպանումը կազմակերպելու գործում:

Կուսակցությունը խնդիր է դրել մինչև 2000 թվականը լուծել բնակարանային պրոբլեմը, վերացնել այդ գործում եղած լարվածությունը: Այնուհանդերձ, էական թերություններ կան բնակարանների, սոցիալական ոլորտի օբյեկտների շինարարության գործում: Ահա թե ինչու հարկ համարվեց հանրապետական կոմիտեի նիստում 1987 թ. սեպտեմբերին քննարկել բնակելի տների և կուլտուր-կենցաղային նշանակության օբյեկտների շինարարության ընթացքը այդ տարվա առաջին ութ ամիսների արդյունքներով: Կոմիտեն նշեց, որ մի շարք մինիստրությունների ու գերատեսչությունների (պատվիրատուների), կապալառու շինարարական կազմակերպությունների ղեկավարներ միջոցներ չեն ձեռնարկում բնակարանների և սոցիալ-կուլտուրական ոլորտի օբյեկտների շինարարությունը արմատապես բարելավելու համար: Այդ նպատակին հատկացված միջոցները անբավարար են իրացվում կոմունալ տնտեսության մինիստրությունում, Երքաղսովետի, Լենքաղսովետի գործկոմներում և այլուր: Շինարարության պլանների կատարման ցածր մակարդակի հիմնական պատճառը եղել է ՀՍՍՀ շինարարության մինիստրության և «Պետագրոարդշինի» գլխավոր կապալառուական կազմակերպությունների անբավարար աշխատանքը: Նրանք ոչ բոլոր միջոցներն են ձեռնարկել նյութական ու մարդկային ռեսուրսները շահագործման հանձնվելիք օբյեկտներում կենտրոնացնելու համար: Ավելին, ՍՍՀՄ և ՀՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեների 1988 թ. հունվարին անցկացված ստուգումները ցույց տվեցին, որ այդ գործում եղած թերությունները դեռևս չեն վերացվել: Ֆինանսավորման բոլոր աղբյուրներով բնակարանային շինարարության պլանը 1987 թ. կատարվել էր 84 տոկոսով, թերակատարվել էին նաև մանկական նախադպրոցական հիմնարկների, հիվանդանոցների, ակումբների գործարկման առաջադրանքները: Հանրապետության 37 շրջաններից 19-ում չէր ապահովվել բնակտարածության շահագործման հանձնումը սահմանված ժամկետներում:

Հանրապետության ժողովրդական վերահսկողության կոմիտեի ուշադրության կենտրոնում են շինարարական ինդուստրիայի բազայի զարգացման հարցերը: Այդ առթիվ ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի 1986 թ. հունվարի 21-ի որոշման կատարման ընթացքի ստուգումը ցույց տվեց, որ կառավարության մի շարք հանձնարարություններ անբավարար են կատարվում, շինարարական ինդուստրիայի բազան զգալիորեն դանդաղ է զարգանում, որը վտանգի տակ է դնում բնակարանային շինարարության ծրագրի իրագործումը հետագա հնգամյակներում: Այսպես, շինմինի կառուցվող օբյեկտներից 13-ում 1987 թվականին չեն իրացվել կապիտալ ներդրումները, պլանավորված 12 օբյեկտներից 5-ում ձախողվել է կարողությունների գործարկումը: Մինիստրությունը չի ապահովել Երևանում և Լենինականում խոշորապանելային տնաշինության գործարանների կարողությունների օգտագործումը բարելավելու վերաբերյալ կառավարության որոշման կատարումը: «Հայագրոշինի» կառուցվող շինինդուստրիայի 10 հիմնական օբյեկտներից 9-ում կապիտալ ներդրումները լրիվ ծավալով չեն իրացվել, չի ապահովվել կարողությունների գործարկումը պլանով նախատեսված բոլոր 4 օբյեկտներում: Ձախողվել է հավաքովի կառուցվածքների թողարկման ծավալի ավելացման կառավարության առաջադրանքի կատարումը շինինդուստրիայի բոլոր 6 ձեռնարկություններում (Էջմիածին, Բաղրամյան, Ախուրյան, Կիրովական, Սիսիան և Կամո):

Քննության առնելով այս հարցը՝ ժողովրդական վերահսկողության հանրապետական կոմիտեն շինմինի, «Հայագրոշինի», «Հատուկմոնտաժշինի» ղեկավարների ուշադրությունը հրավիրեց հանրապետության Մինիստրների խորհրդի որոշումն անվերապահորեն իրագործելու վրա, խիստ պատասխանատվության ենթարկվեցին կառավարության առաջադրանքների կատարման ձախողման մեջ մեղավորները: Կոմիտեի հանձնարարությամբ մինիստրությունների, գերատեսչությունների և ձեռնարկությունների ղեկավարությունը լրացուցիչ միջոցառումներ է մշակել ստուգմամբ բացահայտված թերությունները վերացնելու համար: Կոմիտեն միջոցներ է ձեռնարկում, որպեսզի իր ստուգումներով նպաստի նաև շինարարության հեռանկարային պլանների կատարմանը:

Ժողովրդական վերահսկողության կոմիտեների, խմբերի կարևորագույն խնդիրներից է պայքարը հանուն ռեսուրսախնայողության, տնտեսման, ընդդեմ անտնտեսվարության, շռայլության: Շատ ձեռնարկություններում անբավարար է տարվում հումքի ու նյութերի ծախսի հաշվառումը, գործնական միջոցներ չեն ձեռնարկվում նյութախնայողական տեխնիկայի ու տեխնոլոգիայի, վերամշակման անթափոն գործընթացների արմատավորման համար: Եվ այս ամենը տեղի է ունենում խմբերի, ժողովրդական վերահսկիչների աչքի առջև: Պետք է զգալիորեն խստացվի պայքարն ընդդեմ ժողովրդական բարիքը հափշտակողների, որոնց թիվը, ցավոք, դեռևս մեծ է: Այստեղ հանրապետության ժողովրդական վերահսկողությունը շատ անելիքներ ունի: Հաճախ կոմիտեներին, խմբերին, ժողովրդական վերահսկիչներին պակասում է իսկական խստությունը նրանց նկատմամբ, ովքեր գողանում, հափշտակում են պետական ունեցվածքը:

Կոմիտեները, խմբերը պետք է էապես ուժեղացնեն վերահսկողությունը թողարկվող ժողովրդական սպառման ապրանքների որակի, բնակչության առևտրական, կենցաղային և բժշկական սպասարկման նկատմամբ: Գաղտնիք չէ, որ առևտրի և կենցաղսպասարկման ձեռնարկությունների շատ ղեկավարներ բավարար պայքար չեն տանում հաճախորդներին խաբելու ամեն տեսակ փորձերի, սպեկուլյացիայի դեմ: Եվ ժողովրդական վերահսկիչներին հարկ է լինում ուժեղացնել պայքարը նման երևույթների դեմ: Հանրապետական կոմիտեն 1987 թ. մայիս-հունիսին ուսումնասիրեց Հայկոոպի համակարգում կոոպերատիվ սեփականության պահպանության, վատնումների, հափշտակումների և անտնտեսվարության կանխման նկատմամբ գերատեսչական հսկողության վիճակը: Լուրջ թերություններ բացահայտվեցին վերահսկիչ-վերստուգիչ և հաշվապահական հաշվառման վարչությունների աշխատանքում: Վերստուգումներն անցկացվել են ցածր մակարդակով՝ առանց խնամքով նախապատրաստելու և վատնումներ, հափշտակումներ ծնող պատճառների ու պայմանների խոր վերլուծության: Ստուգման արդյունքների վերաբերյալ որոշումներն ընդունվել են մեծ ուշացումներով, կոպիտ կերպով խախտվել են արժեքների գույքագրում անցկացնելու հրահանգի պահանջները: Կոմիտեի ստուգման արդյունքները քննարկել է Հայկոոպի նախագահությունը և լուրջ միջոցներ ձեռնարկել այդ գործում կարգուկանոն հաստատելու համար: Կոմիտեն խիստ պատժի է ենթարկել մի շարք մեղավոր անձանց:

Հանրապետության ժողովրդական վերահսկողության մարմինները մշտական հսկողություն են իրականացնում պետական առևտրի և սպառողական կոոպերացիայի հասարակական սննդի կազմակերպությունների ու ձեռնարկությունների, ինչպես նաև բանմատբաժինների ու բանմատվարչությունների գործունեության նկատմամբ, նրանց աշխատողներին օգնում՝ բարձրացնելու սպասարկման մակարդակը, արմատախիլ անելու առևտրի կանոնների խախտման փաստերը: Վերջին երկու տարում, օրինակ, հանրապետական կոմիտեն հասարակական սննդի ոլորտում անցկացրել է 9 ստուգում, որից 5-ը՝ մասսայական:

Մեր կոմիտեն ՀԱՄԽ-ի հետ համատեղ ընթացիկ տարվա հունվար-մարտին ստուգել է արդյունաբերական ձեռնարկություններում հասարակական սննդի վիճակի և հետագա բարելավման միջոցառումների մասին ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի որոշման կատարման ընթացքը:

Ստուգումը ցույց է տվել, որ ՀՍՍՀ թեթևարդմինը, տեղարդմինը, պետագրոարդը, մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների («Հայքիմմեքենա», «Լենտեքստիլ» արտադրամիավորումներ, «Մասիս» ա/մ մոդելային կոշիկի ֆաբրիկա, Երևանի ավտոդողերի, ռետինատեխնիկական իրերի, Ձերժինսկու անվան հաստոցաշինական, Լենինականի հղկիչ հաստոցների, Կիրովականի «Ավտոմատիկա» և այլ գործարաններ) ղեկավարներն անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկել այդ որոշման կատարման համար, որի հետևանքով հասարակական սննդի կազմակերպումը և սանիտարական վիճակը նախկինի պես ցածր մակարդակի վրա են: Նրանք չեն կատարել գործող ճաշարաններն ու բուֆետներն անհապաղ կարգի բերելու մասին հանրապետության կառավարության պահանջը: Կոմիտեն քննության առավ ստուգման արդյունքները, ո-





digitised by A.R.A.R.@

րոշեց մի շարք մեղավոր անձանց հեռացնել զբաղեցրած պաշտոններից, ենթարկել վարչական պատասխանատվության: Միջոցներ են ձեռնարկվում այդ կարևոր գործում կարգուկանոն հաստատելու համար:

Հանրապետության ժողովրդական վերահսկողության մարմինները, առևտրի մինիստրության և Հայկոոպի պատասխանատու աշխատողների մասնակցությամբ, 1987 թվականի հուլիս-սեպտեմբերին անցկացրին մանրածախ ապրանքաշրջանառության պլանների կատարման համար եղած ռեզերվների օգտագործման վիճակի մասսայական ստուգում: Այն ցույց տվեց, որ առևտրի մինիստրությունը, Հայկոոպի վարչությունը, նրանց ենթակա կազմակերպությունների ու ձեռնարկությունների ղեկավարները դեռևս անբավարար են կատարում բնակչության առևտրական սպասարկումն արմատապես բարելավելու, ապրանքաշրջանառության պլանները հաջողությամբ կատարելու վերաբերյալ կուսակցության ու կառավարության ցուցումները: Առևտրի մինիստրությունը և հատկապես Հայկոոպը վատ են օգտագործում ապրանքաշրջանառության պլանի կատարման եղած մեծ ռեզերվները: Մասսայական ստուգման ընթացքում բացահայտվեցին և գործի դրվեցին ապրանքաշրջանառության ավելացման շատ ռեզերվներ: Ստուգման արդյունքները քննության են առնվել հանրապետության Մինիստրների խորհրդում:

Եվս մեկ կարևոր պրոբլեմ, որի լուծման համար խիստ անհրաժեշտ է բարձրացնել ժողովրդական վերահսկողության մարմինների պատասխանատվությունը: Խոսքը անողոք պայքար ծավալելու մասին է՝ ընդդեմ բյուրոկրատիզմի ու քաշքշուկի, որտեղ և ինչ ձևով էլ որ դրանք դրսևորվեն: Վերահսկողության տեղական կոմիտեները, խմբերը պետք է ուժեղացնեն հսկողությունը կատարողական կարգապահության վիճակի նկատմամբ, հետամուտ լինեն, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, Գերագույն սովետի Նախագահության և Մինիստրների խորհրդի որոշումները, սովետական օրենքները անվերապահորեն կատարվեն սահմանված ժամկետներում: Գործի շահերը պահանջում են, որ ամենուրեք բարելավվի աշխատանքը քաղաքացիների նամակների ու բողոքների հետ, ավելի շատ ունկնդրել մարդկանց կարծիքը, ուշադիր վերաբերվել նրանց կարիքներին:

Ներկայումս, երբ ամենուրեք առաջին պլան է մղվում կոնկրետ գործը, վերահսկողության կոմիտեները, խմբերը, ժողովրդական վերահսկիչները պարտավոր են ավելի վճռականորեն պայքարել արտադրության, կառավարման և սպասարկման ոլորտի բոլոր տեղամասերում կարգի, կազմակերպվածության ու կարգապահության ամրապնդման համար: «Վերակառուցումը,— ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումում ասաց Մ. Ս. Գորբաչովը,— աշխատանք է, աշխատանք ու դարձյալ աշխատանք: Համառ, արիական, ամենօրյա»:

Վերակառուցման ներկայիս փուլը, ամենից առաջ, բոլոր առումներով ավելի բարձր պահանջկոտություն է բոլորից՝ թե՛ ղեկավարներից, թե՛ շարքային աշխատողներից, խիստ վերահսկողություն կուսակցության ու կառավարության դիրեկտիվների ճշտիվ կատարման նկատմամբ: Այժմ հնարավոր չէ վերահսկողական աշխատանքը առաջ տանել հին մեթոդներով, առավել ևս բավարարվել արմատացած մոտեցումներով, երբ վերահսկողությունը հաճախ նպատակամղվում էր այն բանին, որ ինչքան հնարավոր է շատ ստուգումներ անցկացվեն, արձանագրվեն թերությունները՝ առանձնապես հոգ չտանելով այն մասին, թե դա գործնական ինչ արդյունքներ է տալիս:

Անհրաժեշտ է արագորեն ու վճռաբար փոխել հսկողական աշխատանքի ոճն ու մեթոդները: Կիսամիջոցները չեն օգնի, հարկավոր են լուրջ վերափոխումներ: Լենինը նշում էր, որ բանգյուղտեսչության խնդիրն է ոչ միայն և նույնիսկ ոչ այնքան «որսալ», «մերկացնել», որքան **կարողանալ** ժամանակին **ուղղել:** Իսկ դրա համար հարկավոր է, առաջին, ուսումնասիրել և հետազոտել գործի վարումը, երկրորդ, ժամանակին **կատարել** անհրաժեշտ գործնական փոփոխություններ, կենսագործել դրանք իրականում (տե՛ս ԵԼԺ, հ. 44, էջ 152):

Այսօր ժողովրդական վերահսկողության մարմինների համար նորովի աշխատել նշանակում է՝ իրականացնել լայն, գործիմաց ստուգումներ, խուսափել մանրուքներից, խորապես ուսումնասիրել պրոբլեմները, ժամանակին ի հայտ բերել և համարձակորեն առաջադրել հասունացած հարցերը: Այլ կերպ ասած՝ գործն այնպես վարել, որ այն հասցվի մինչև լուրջ տնտեսական ընդհանրացումների, լիովին պատասխան տրվի վերահսկողության արդյունքներին:



Լայն դեմոկրատացման մեր ժամանակներում ամբողջ վերահսկողական գործունեությունը պետք է լինի հրապարակային, բացազատ, անցկացվի ի տես բոլորի: Ինչպես շեշտում է Մ. Ս. Գորբաչովը, հրապարակայնությունը աշխատանքի բարելավման հզոր լծակ է մեր շինարարության բոլոր տեղամասերում, կառավարման առանց բացառության բոլոր մարմինների աշխատանքի նկատմամբ համաժողովրդական վերահսկողության գործուն միջոց: Ուստի հարցը մեզ համար միանշանակ է՝ որտեղ չկա վերահսկողության լայն հրապարակայնություն, այնտեղ չկա վերակառուցում վերահսկողական մարմինների աշխատանքում:

Միայն սիստեմատիկ, սկզբունքային ու արդյունավետ վերահսկողությունն է ավելի արագ և ամենից ավելի լավ բուժում զանազան հասարակական ախտերը, մարդկանց նախազգուշացնում սխալների կրկնումից, մասսաների դատին հանձնում օրինականությունը և բարոյականությունը խախտողներին: Դա միշտ է կարևոր եղել: Առավել ևս հարկավոր է այժմ, երբ հրապարակայնության, ինչպես և վերահսկողության սուր ծայրը պետք է ուղղվի այն ամենի վերացմանը, ինչը խոչընդոտում է վերակառուցմանը, ամեն կերպ պաշտպանի ու հաստատի նոր մոտեցումները գործին:

Մենք պետք է ավելի ընդլայնենք և ամրապնդենք վերահսկողության դեմոկրատական հիմքը, ավելի շատ հենվենք աշխատավորական կոլեկտիվների վրա, պարբերաբար հաշվետվությամբ հանդես գանք նրանց առջև: Անհրաժեշտ է բոլոր մակարդակներում ավելի լավ համագործակցել կուսակցական վերահսկողության հանձնաժողովների, սովետների մշտական հանձնաժողովների, արհմիությունների, կոմերիտմիության հետ, դատախազության, ներքին գործերի և պետարբիտրաժի մարմինների հետ:

Ժողովրդական վերահսկողության մարմինների աշխատանքում վերակառուցման խորությունը, հաջողությունը անմիջականորեն պայմանավորված է կադրերով: Նրանց առջև կյանքը բարձր պահանջներ է դնում: Այսօր վերահսկողությանը հարկավոր են իսկական մարտիկներ, որոնք լինեն ազնվության, սկզբունքայնության, անաղարտության տիպարներ: Վ. Ի. Լենինը, ինչպես հայտնի է, հետամուտ էր լինում բանգյուղտեսչության ամրապնդմանը, առանձնահատուկ հոգատարություն ցուցաբերում, որպեսզի նրանում աշխատեն այնպիսի անձինք, ովքեր չեն վախենա «ոչ մի պայքարից՝ լրջորեն իրենց առաջադրված նպատակին հասնելու համար»:

Ժողովրդական վերահսկողության ուժը կուսակցական ղեկավարման մեջ է: Այդ մարմինների առջև ծառացած մեծ խնդիրների լուծման գործում մենք ակնկալում ենք կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների օգնությունը: Անհրաժեշտ է, որ նրանք մշտապես ուղղություն տան ժողվերահսկողության կոմիտեների, հատկապես անմիջականորեն աշխատավորական կոլեկտիվներում գործող խմբերի աշխատանքին, դրանք ամրապնդեն կազմակերպչորեն, հետամուտ լինեն, որպեսզի յուրաքանչյուր կոմիտե, խումբ դառնա իրոք օրինակելի և մեծ հեղինակություն ունեցող մարմին:

---

digitised by A.R.A.R.@

իրենց ունեցած հնարավորությունները վատ են օգտագործում Զեյթունի, Լալվարի, Ոսկևանի, Հաղթանակի մշակույթի տները:

Այսօր մեզ համար կարևոր ու անհետաձգելի խնդիր է կուլտուր-լուսավորական հիմնարկների շենքային պայմանների բարելավումը: Ճիշտ է, ինչպես ասվեց, շահագործման կհանձնվի Ծավարշավանի մշակույթի պալատը, որի կառուցման համար հատկացվել է 524 հազար ռուբլի: Այն կունենա աշխատավորության կուլտուրական հանգիստը արդյունավետ կազմակերպելու բոլոր հնարավորությունները: Բայց ընդհանուր առմամբ մշակույթի օջախների շենքային պայմանները վատ են, և շրջանը կանգնած է լուրջ դժվարությունների առջև: Բավական է ասել, որ ակումբային հիմնարկների կեսից ավելին տեղավորված է մի կերպ այդ նպատակին հարմարեցված շենքերում: Նման վիճակում են Բարեկամավան, Ոսկեպար, Բաղանիս, Ջուջևան, Դովեղ և այլ գյուղերը: Նույնիսկ շրջկենտրոնի մշակույթի տունը ամենևին չի համապատասխանում ներկայիս պահանջներին: Ու թեև կուսշրջկոմը, շրջսովետի գործկոմը նոր շենք կառուցելու առնչությամբ բազմիցս հարց են հարուցել հանրապետական մարմինների առջև, վերջիններս մինչև օրս չեն արձագանքել մեր խնդրանքին: Չի լուծված նաև շրջկենտրոնի երաժշտական ու գեղարվեստի, ինչպես նաև գրադարանի տիպային շենքեր ունենալու խնդիրը: Այս ամենը վկայում է, որ տակավին չի հաղթահարվել սոցիալական ոլորտի նկատմամբ «մնացորդային» մոտեցումը:

Եվս մեկ հանգամանք, որը նույնպես ուշադրության է արժանի: Խոսքը ակումբային հիմնարկների նյութական բազայի մասին է: Բանն այն է, որ խիստ աղքատիկ են կահավորված շատ մշակույթի տներ ու ակումբներ: Դրանցում չկան աշխատավորների հանգստի անցկացման տարրական պայմաններ, պակասում են գույքը, երաժշտական գործիքները, խաղամիջոցները: Շրջանում ստեղծված գեղարվեստի կոմբինատը, որը համալրված է բարձրորակ մասնագետներով, դեռևս չի ապահովվում հումքով, դժվարություններ կան գների կայուն համակարգի ստեղծման, ինչպես նաև ֆինանսատնտեսական հարցերում, հատկապես տնտհաշվարկի անցման պայմաններում:

Մեզ մտահոգում է նաև մի այլ հարց. ժամանակն է, որ համապատասխան մարմինները վերջ դնեն կուլտլուսհիմնարկների եռիշխանությանը, ստացվում է այնպես, որ նրանց կադրերը նշանակում է կուլտուրայի բաժինը, աշխատավարձը վճարում է գյուղական սովետը, գույքը ձեռք է բերում տվյալ տնտեսությունը... մի խոսքով, այս հարցում հստակությունը կնպաստի կուլտլուսհիմնարկների գործունեության աշխուժացմանը և արդյունավետության բարձրացմանը:

Կուսակցության գաղափարախոսական աշխատանքն ըստ էության ընդգրկում է հասարակական կյանքի բոլոր ոլորտները: Այդ աշխատանքը բարդ ու բազմանիստ է, ինչպես ինքը՝ իրականությունը: Ուստի գաղափարախոսական ոլորտի, այդ թվում և կուլտլուսհիմնարկների աշխատողներից պահանջվում են գաղափարական հասունություն, բարձր որակավորում, պրոֆեսիոնալիզմ, մարդկային վսեմ հատկանիշներ: Գործունեության աշխատանքի այդ բնագավառի վերակառուցման հաջողությունը մեծապես պայմանավորված է դրա կուսակցական ճիշտ ղեկավարումով: Մեր գործունեության համար ուղեցույց է ՍՄԿԿ XXVII համագումարի այն դրույթը, որ գաղափարախոսական աշխատանքը ամեն ինչով պետք է ելնի կյանքից: «Լճացումը,— ասված է Քաղաքական զեկուցման մեջ,— պարզապես անհանդուրժելի է մի այնպիսի կենդանի, դինամիկ, բազմակողմանի գործում, ինչպիսին են... գեղարվեստական ստեղծագործությունը և գեղարվեստական ինքնագործունեությունը, ակումբների ու թատրոնների, գրադարանների ու թանգարանների աշխատանքը...» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը**, էջ 124):

Կուլտլուսօջախներում գործերի վիճակն արմատապես բարելավելու նպատակով կուսշրջկոմը, շրջսովետի գործկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները, գյուղական ու ավանային սովետները ձգտում են դրանց աշխատանքը վերակառուցել կուսակցության ժամանակակից պահանջների ոգով, դրանով իսկ խորացնել վերակառուցման պրոցեսը աշխատավորների հոգևոր պահանջմունքների բավարարման ասպարեզում:

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՇՈՒՐՋ

**Ա. ԳԵՎՈՐԳՅԱՆ**

ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄ: ՍԱ ՍՈՍԿ ԲԱՌ ՉԷ: Այն հավատ է ու նվիրում: Ուստի մեզանից յուրաքանչյուրը մեկ անգամ էլ պետք է փորձի ներանձնանալ, ճիշտ գնահատել սեփական վարքագիծը, աշխատելու ոճը, ինքնակատարելագործման կարողությունը, ողջ էությունը: Մեզ անհրաժեշտ է հետադարձ հայացք ձգել, տեսնել մեր երեկը, այն կասեցնող հանգամանքները, որոնք այսօր էլ դեռ շարունակում են խանգարել մեր առաջընթացին:

Ճշմարտության դեմ չմեղանչելու համար խոստովանենք, որ տարիների ընթացքում մեր մեջ արմատացել է ձևացման բնավորությունը: Մշտապես ձևացրել ենք՝ իբր լսում կամ չենք լսում, տեսնում կամ չենք տեսնում, հավատում կամ չենք հավատում, գիտենք կամ չգիտենք... Ձևացրել ենք ու դեռ ձևացնում ենք: Ու այսօր մի քիչ սթափված՝ թվում է, թե զգում ենք, որ մենք էլ մեր դեմքը չենք ճանաչում. ինքներս մեզնից հեռացել ենք, շա՜տ ենք նահանջել: Դեռ այսօր էլ շիտակ ու համարձակ խոսելիս (եթե մամուլում կամ ամբիոնում չէ, այլ՝ առօրյա խոսքում) մի տեսակ ընդարմացած մարդու ենք նմանվում: «Խելքը հո չի՞ թռցրել»,— երկմտում ենք՝ համոզված լինելով որ՝ չէ, այնուամենայնիվ, խուսափում ենք ճշմարտախոսից. մեզ հանկարծ չտեսնե՜ն կասկածելի անձնավորության հետ...

Երբեմն այնպիսի իրավիճակ է ստեղծվում, որտեղ ինքնադրսևորման և իսկապես աշխատելու հնարավորություն է ստեղծվում, ու ներքուստ ցավով համոզվում ենք՝ որքան էլ աշխատել ենք, ա՛յն չի եղել, սոսկ պարտականություն ենք կատարել... ու ինչ-որ մի արգելք է գնդվում մեր ներսում, կարծրացում՝ մտքի, շիտակության, ստեղծագործելու, հիշողության... ու՝ ներքին մի ջղաձգություն... «Խզվե՜լ ենք» նույնիսկ ինքներս մեզնից: Կրկին իներցիան փորձում է տիրել մեզ, դարձյալ երևան է գալիս անցյալ այդ հիվանդությունը՝ ձ և ա ց ո ւ մ ը: Ահա թե ինչու ցանկացած առիթով քննադատական խոսք հնչեցնելուց հետո ասպարեզ են գալիս մարդիկ, որոնք իրենց ձևացնում են վիրավորված: Եվ մի՞թե սրա վկայությունը չէ այն, որ ոմանք հստակ կողմնորոշում չունեն, դեռ սպասողական դիրք են գրավում, մինչև տեսնեն՝ ինչ է լինելու: Ի՞նչ է լինելու: Այրված են բոլոր կամուրջները: Ուրեմն՝ ավելորդ է ջանալ ապացուցելու, որ երկրում, հանրապետությունում, շրջանում, մեր աշխատանքի վայրում անազնվության, կաշառակերության, հովանավորչության և մյուս հոռի երևույթների ծլարձակման ու արմատակալման մեջ անմասն չենք նաև մենք, որքան էլ ջանանք ապացուցել մեր ազնվությունը: Միայն մի բան է մնում՝ պետք է առաջ ընթանալ, առավել ևս եթե մեզ ազնիվ ենք համարում: Բայց մի՞թե մեզանից որևէ մեկն իրավունք ունի ճահճացման, լճացման նման իրավիճակում իրեն մաքուր ապրած կամ ապրդած համարել՝ սեփականելով հարմարվողականության ու յոլա գնալու սկզբունքը: Արդարացման փորձը նշանակում է մեզանում ձևավորված, մեր կոչմանն ու էությանը խորթ հատկանիշների լռելյայն ընդունում:

Ազնիվը լավագույն դեպքում վախվորած կուչ է եկել մեր կոկորդում, ատամների արանքում, խզված ձայնում, սեղմված, բայց քարացած բռունցքում և, անձամբ վատ բան չանելով, այնուամենայնիվ, մաքուր հորջորջվել չենք կարող: Բավական չէ՞ հիշել մեր տեղի տալը կամ ընկճվածությունը, մեր անզորության ընդունումը որևէ հոռի երևույթ կանխելու կամ արմատախիլ անելու ձախողման դեպքում: Ազնիվը մեզանում ննջել է, անթեղ-՛ել, պետք է արթնացնել, բորբոքել այն: Դրա համար առաջին հերթին անհրաժեշտ է ավատ ճշմարտի հաղթանակի ու դրանում՝ մեր ուժերի նկատմամբ: Այս առնչությա ։ արժե հիշել ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումում ընկ. Մ. Ս. Գորբաչովի ար աձայտած այն միտքը, թե «Մենք շատ բան ենք կորցրել և շարու-

ԳԵՎՈՐԳՅԱՆ ՆԱԶԻՏ ՀԱՅԿԻ— «Հրազդան» թերթի խմբագրի տեղակալ:



digitised by A.R.A.R.@

Ճակում ենք կորցնել այն պատճառով, որ չկարողացանք լրիվ չափով կապանքներից ազատել մարդկանց նախաձեռնությունը, ստեղծագործությունը, ինքնուրույնությունը: Հենց դա է վերակառուցման ամենամեծ, ամենադժվար, բայց նաև ամենակարևոր խնդիրը»:

Խոսքի և գործի խզում, հավատի կորուստ, կուրորեն առաջ մղվելու՝բնազդ՝ անհավասիկ մեր ժառանգությունները: Հետևանքը՝ ձևախախտված պատկերացում... ընդհուպ մինչև մեր կուսակցության ու հասարակարգի վերաբերյալ: Նման վարքագիծը ավելի խորքերն է թափանցում: Այս անվստահությունն ու անբարեհաճությունը հանգեցնում են ծայրահեղին: Ունենք ներման միայն մեկ ուղի՝ առողջ և սթափ հայացքով վեր հանել մեր սխալները, գտնել մեր կյանքի խոտելի երևույթների արտադրության, վերարտադրության և բազմացման բացահայտման մեխանիզմը ու այն խափանելու, վերափոխելու գործնական միջոցներ կիրառել: Դրա լիակատար հնարավորությունը վերապահված է յուրաքանչյուրին, ով կդրսևորի քաղաքացիական առողջ ակտիվություն, ով դրա համար լիակատար իրավունք, անկոտրում կամք ունի:

Վերջին ժամանակներս մամուլում ծավալվել են բանավեճեր, մտքերի փոխանակություն մեր պատմության մեջ Ստալինի դերի շուրջը: Այդ հարցը պատահական չէ, որ գտնվում է ուշադրության կենտրոնում: Նրա շուրջը տեղի է ունենում վերափոխումների կողմնակիցների ու հակառակորդների ուժերի բևեռացում: Մի կողմից՝ այն ուժերի, որոնք պետության հզորությունը տեսնում են ղեկավարի միանձնյա իշխանության մեջ, որը ժամանակի ընթացքում ձանձրույթ է պատճառել, երբ հարկ չի եղել իր վրա պատասխանատվություն վերցնել ինչ-որ պրոբլեմ լուծելու համար, մյուս կողմից՝ այն ուժերի, որոնք ձգտում են վերադարձնել պետության կառավարման լենինյան նորմերը և դեմոկրատական ինքնակառավարման մեջ են տեսնում սոցիալիզմի բուն էությունը: Եվ պատահական չէ, որ «Սովետսկայա Ռոսիա» թերթում Ն. Անդրեևայի հոդվածի շուրջը համախմբվեցին նրանք, որոնց վերակառուցումը խանգարում է ապրել հին ձևով, չի թողնում հանգիստ նստել իրենց հարմարավետ առանձնասենյակներում՝ մինչև խոր ծերություն ոչ պետքական թղթերը վերադարսելու համար: Եվ դա վերակառուցման չորրորդ տարում, XIX կուսակցական կոնֆերանսի նախօրեին, որին անհամբերությամբ սպասում է ողջ երկիրը: «Պրավդայի» «Վերակառուցման սկզբունքները. մտածողության և գործողության հեղափոխականությունը» խմբագրական հոդվածը արտահայտեց մեր յուրաքանչյուրի խոհերն ու ակնկալությունները: Ստալինի դերի հարցը պատմական հարց չէ, դա հարց է ապագայի մասին, այն մասին, թե ինչ է սպասվում մեզ առաջիկայում... կզարգանա և կգործի սոցիալիզմի դեմոկրատական ներունակությու՞նը, թե՞ նորից կվերարտադրվի արգելակման մեխանիզմը՝ բյուրոկրատիայի և բռնապարտիզմի հետ բոլոր մակարդակներում:

Անհատը պատմության առաջընթացում կարևոր դեր ունի: Ե՞րբ է անհատը լիիրավ արտոնագիր նվաճում: Մեր կարծիքով, երբ նա անառարկելիորեն գերազանց է հասարակական տվյալ խմբի բոլոր անդամներից և՛ մտավոր ու հոգևոր կարողություններով, և՛ մտահոգված է նրանց շահերով (սա իդեալական դեպքն է): Մյուս դեպքը բռնությամբ գերիշխանություն հաստատելն է: Կա նաև երրորդ տարբերակը. մարդը կարող է չփայլել ոչ մի շնորհով, բայց հանկարծ դիրքի առավելությունից բխող արտոնություն սեփականել՝ ամրակայելով ոմանց (ներքևի օղակներում) աթոռը կորցնելու անհանգստությամբ, դիրքերը չխարխլելու մտահոգությամբ: Ինչևէ, կյանքի ցանկացած օղակում, երբ անառարկելի ու անքնին են առաջին դեմքի խոսքն ու վարքագիծը, ապա դա ոչ այլ ինչ է, եթե ոչ անհատի ինքնագործունեության վտանգավոր ազատություն (պատահական չէ ժողովրդի այն համոզմունքը, որ մի խելքը լավ է, բայց երկուսն՝ ավելի լավ): Սա կյանքի առաջընթացի ամենամեծ ուղեփակոցն է, քննադատության պարտադիր արգելակումը, հետագա ճշմարիտ խոսքի սահմանափակումն ու կանխումը, ճշմարտության ու արդարության որոնումներում մարդկանց հստակ կողմնորոշման աղավաղումը: Ցավոք, իսպառ մերժելի և արատավոր կառավարման այս եղանակը գործել է մեր երկրում և իներցիայով շարունակում է գործել շատ տեղերում: Բնականաբար, ղեկավար անհատի ինքնագործունեության ազատություն էր նաև Հրազդանի շրջկոմում, նրա նախկին առաջին քարտուղարի գլխավորությամբ... Դա նշանակում է, որ ստեղծվել էր արգելակման մի կենտրոն նաև մեզ մոտ, որը հավասարապես ճնշում էր կյանքի բոլոր օղակները: Ահա սռնին, որը մշտապտույտ նույն երևույթներն է արտադրել: Յուրաքանչյուրն իր աթոռը պահելու մտահոգությամբ գլուխ չի ցավեցրել, հաճոյացել է անգամ՝ քամահրելով կողքի «անհաշտ տարրին» (գուցե և ներքուստ համակրելով



նրան): Եվ ամեն մեկն առիթն օգտագործել է իր կարողությունների ու հնարավորությունների չափով պատճենելու տիրոջ, թող որ՝ անառողջ մտածելակերպն ու գործելակերպը: Ուրեմն, հերթականությամբ կյանքի տարբեր ոլորտներում պատճենելով՝ հանդես են բերել ըստ հարկի պետքական անտարբերություն, մեծահոգություն կամ՝ հետևողական, կործանարար բծախնդրություն: Այս ամենը աստիճաններով փոխանցվել է օղակից օղակ և հետադարձ կապի օրենքով՝ առավել ամրապնդվել:

Կուսակցությունը մեզ այսօր ամենայն մանրամասնությամբ դիտարկելու, գիտակցաբար գնահատելու հնարավորություն է տվել, որով ապահովվելու է մեծագույն վերափոխումը: Լիիրավ դեմոկրատիայի պայմաններում կարող ենք առանց դեմքին-դիրքին նայելու ասել ճշմարտությունը, վեր հանել մեր կյանքում տեղ գտած թերությունները, շոշափել դրանց արմատները: Այսօր ի զորու ենք հաղթահարելու շատ արգելքներ՝ անքթիթ նայելով ճշմարտության աչքերի մեջ, համտեսելով այն, որքան էլ դառը լինի: Եթե այսօր հապաղենք, վաղն արդեն կարող է ուշ լինել: Ճիշտ է, տարիներ շարունակ մեր լսելիքը շոյվել է հաճոյախոսությունից, մեր աչքը՝ բերաններիցս դուրս թռած խոսքի անվերապահորեն, հնազանդորեն ընդունելության տեսարանից, սակայն կուսակցությունը սովորեցնում է նաև քննադատությունը լսելու և ընդունելու արիությունը: Երբ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան 1987 թ. պլենումում արդարացի քննադատություն հասցեագրվեց մեր հանրապետությանը՝ ցավով, բայց արդարորե՛ն լսեցինք ու, ավելին, անմիջապես համաբանությամբ տեղայնացրինք, համոզվեցինք, այո՛, տնտեսական, քաղաքական կյանքում և բոլոր ոլորտներում լճացում է, որը բխում է գաղափարաբարոյական հեղձուկից: Սրանում վճռորոշ դեր են խաղում կադրերի ոչ ճիշտ ընտրությունը: Կոլեգիալության սկզբունքի մարման համար գործել են նպաստավոր բոլոր պայմանները (չնայած ամենուր այն ձևականորեն գոյություն է ունեցել): Հիմնականում միանձնյա է որոշվել կադրերի հարցը, դրանով՝ հիմնարկ-ձեռնարկությունների, տնտեսությունների ճակատագիրը, իսկ միջամտելու իրավասուները հանդես են բերել լոյալություն և կողքից դիտելու ընդունակություն: Ուստի, հույժ կարևորվում է առաջին դեմքի անաղարտության կամ անմաքրության չափը, որն անմիջական ցուցիչ է դառնում սանդուղքի նախորդ աստիճանների համար և՝ հասարակական կյանքի վճռական գործոն:

Շրջկոմն իր ազդեցության ոլորտներն ընդլայնել էր, այն տարածելով շրջանային ու քաղաքային սովետների գործունեության վրա՝ նրանց դիմազրկելու գնով: Ամենացածր պաշտոնն անգամ զբաղեցնում էր քարտուղարին ձեռնտու մարդը: Նույնիսկ սպանդանոցի վարիչին նա պետք է «ընտրեր»: Իրոք, ամեն ինչ որոշում են կադրերը, սակայն այս պարագայում ոչ միայն անտեսվում էին Լենինի խորհուրդները նրանց ընտրելու հարցում, այլ մինչև անգամ հաշվի չէին առնվում մարդու կրթությունն ու մասնագիտությունը: Ըստ Լենինի պետք է նկատի ունենալ ոչ միայն մարդու գործնական հատկանիշները, վարչական ընդունակությունները, գործը գիտենալը, բարեխղճությունն ու պարտաճանաչությունը, այլև՝ բարոյական կերպարը: Հակառակ դեպքում ցանկալի արդյունք չէր սպասվի: Այդպես էլ լինում էր: Կարճ ժամանակում «հարմար» ղեկավարներն իրենց սպառում էին և՛ բարոյապես, և՛ քաղաքականապես: Ահա նրանցից մեկի տխուր ճակատագիրը: Կաթի գործարանի դիրեկտորի աթոռն զբաղեցրեց ոչ մասնագետ մարդը, որը գիտեր ի՛ր գործը. արագորեն «աճեց» և կործանվեց՝ նման սայթաքման հնարավոր բոլոր վատ կողմերն իր մեջ խտացնելով:

Շրջկոմի վարած անառողջ քաղաքականության պատճառով չէ՞ր, արդյոք, որ ջերմոցային կոմբինատը չէր գտնում իր դիրեկտորին: Նույն վիճակում էին ցեմենտի, «Հանքավան» հանքային ջրի գործարանները, Սոլակի կոլտնտեսությունը: Բազմաթիվ են փաստերը:

Ընկ. Մ. Ս. Գորբաչովը վերջերս առանցքակալների առաջին պետական գործարանի կոլեկտիվի հետ հանդիպելիս դիպուկ բնութագրեց կադրային այսօրինակ լճացումը. «Ժամանակին երկրում կանգնեցված էր կադրերի նորացման պրոցեսը, գոյացել էր յուրօրինակ կադրային լճացում: Ղեկավարներից ոմանք անվերապահորեն համոզված էին, որ ոչ թե իրենք են ծառայում ժողովրդին, այլ ժողովուրդն է իրենց ծառայում: Ահա թե ինչու է պետք դեմոկրատիան, որն ամեն ինչ իր տեղը կդներ»:

Նման ղեկավարներն իրենց «անմեղ» գործողությունների համար մեծ մասամբ միայն ազատվում էին աշխատանքից կամ աթոռից աթոռ փոխադրվում: Եթե անգամ պատասխանատվության էին ենթարկվում, դրանով հատուցվու՞մ էր հասարակությանը հասցված բարոյական վնասը: Սովորական դարձած խախտումները թափանցում են նույնիսկ կուսակցության շարքերի համալրման ասպարեզ: Շրջկոմի անդամներն այս



digitised by A.R.A.R.@

թյամբ այդ ընկերները նպաստել են խոտելի երևույթների ծաղկմանը և իրենք են հնազանդորեն ընթացել կոմունիստ-մարդու կերպարը կորցրածի հետևից: Ավելին, այսօր էլ իրենց արդարացնում են. «Ի՞նչ կարող էինք անել մենք, երբ կապիտանը նավը վարում էր դեպի կեղտաջրերը»: Կրկին պատկերավոր է ասված, ցավոք, մոռացվել է, որ բոլորին են հայտնի շատ դեպքեր, երբ նույնիսկ նավի ուղևորն է անձնազոհություն ցուցաբերել, հենց զգացել է, որ նավը լողում է դեպի կործանում, դեպի տիղմը: Իսկ այս պարագայում նավի անձնակազմից որևէ մեկի կյանքը զոհաբերելու հարկ չի եղել: Այստեղ գործել է բարեկեցության, հարմարավետության կորստի վախը, դրա համար էլ լռելյայն կամ էլ գործնականորեն նպաստել են նավի սխալ ընթացքին (թերևս նաև՝ մեկ-երկու ձուկ ավելի բռնելու նկրտումով): Եվ արդ, նավի անձնակազմն այսօր ձևականորեն ընդունում է մեղադրանք-գնահատականն ընդհանուր առմամբ, բայց հետագա խոսքում ժխտում է մեղադրականը և ներքին համոզվածություն չի ցուցաբերում նաև իր սխալի հանդեպ: Հապա ինչպե՞ս հավատալ նրան, որ հաջորդ կապիտանի օրոք էլ միայն տարուբերվողի դերում հանդես չի գա, իսկ հետագայում (եթե պատասխանատվության հարց առաջանա) չի՞ կրկնի; որ ինքն անմեղ է, որովհետև ամբողջ բեռը կապիտանի ուսերին է եղել... Այնինչ յուրաքանչյուրիս հոգեբանության մեջ էլ բույն են դրել հիվանդագին երևույթներ, որոնցից ազատվելու համար առողջ, ներզննող հայացք է պետք: Բոլորիս է պետք հոգեբանությունը վերակառուցելու կորով: Չթաքցնենք, այս ընկերներից ոմանք դիմադարձելու կորով են հանդես բերում (մի բան, որ հավաստում է, թե նրանք կարող էին նավի ընթացքին միջամտել և միջամտել են), բայց սխալ ուղին ընտրելով: Աներկբայելի է, որ այս ամենը քաջ գիտակցում են աշխատավորները (նույնիսկ պլենումում տեղերից եղան նման հարցապնդումներ) և համառորեն ընթանում են վերակառուցման անկասելի ուղիով: Դա մեկ անգամ ևս հաստատումն է այն բանի, որ աշխատավոր մարդը ոչ միայն չի կիսում պահպանողականների կարծիքը, այլև հակառակ տեսանկյունից է դիտում հարցերը: Այսպես, նա համոզված է, որ կան դեպքեր, երբ ճշմարիտ խոսք հնչեցնելը հավասարազոր է կրծքով հրանոթի փողը փակելուն և՛ անձնականի, կյանքի վտանգման, և՛ հասարակական օգտակարության իմաստով: Այդպիսի խոսք հնչեցվել է, և դա ո՛չ թե խայտառակել է, այլ խայտառակությունը (տիրող վիճակը) կանխել, ո՛չ թե դավաճանություն էր, այլ՝ ճշմարիտ հայրենասիրություն: Ինքնամարտիրոսվելու իրատեսությամբ, անկոտրում համառությամբ ու հանդգնությամբ կործանում տանող կեղծիքի առաջն առնելը արիություն է, պատիվ ու մարդասիրություն, մեր ժողովրդի կենսունակության, վատի անհանդուրժողականության, ինքնամաքրման հատկանիշների դրսևորումն է:

Աշխատավոր մարդը համոզված է ու ոգևորված, որ շրջանում փոխվում է շատ բան, արմատականում է հավատը. արդեն ծնունդ են առնում ժողովրդական ընտրությունները, ղեկավարները հաշվետվություններով հանդես են գալիս կոլեկտիվների առջև, առկա են հասարակական կարծիքի հետ հաշվի նստելու ողջախոհությունը, հրապարակայնության ապահովումը, դեմոկրատիայի վերընթաց զարգացումը և այս ամենի համար՝ թերթի ճիշտ օգտագործումը: Շրջանում գաղափարի որոշակիությունն ապահովված է, ուղին՝ անառարկելիորեն ընտրված: Աներեր դիրքերում է գաղափարակիր առաջամարտիկը: Գաղափարը տիրապետում է զանգվածներին, այլև անհաղթահարելի է նորը կառուցելու կամքը, որը վաղը պետք է երևա և՛ տնտեսական, քաղաքական ու սոցիալական, և՛ հոգևոր, բարոյական ոլորտներում...

Աշխատավորները վստահությամբ են նայում ապագային: Արդ, մեզ անհրաժեշտ է մեկ անգամ էլ ստուգել մեր ուժերը՝ պարզելու, թե մեր ուսերը կդիմանա՞ն վերակառուցման ծանրությանը: Եթե տատանվենք անգամ՝ ներքին հավատով, անընկճելի կամքով, հաղթանակ տենչացող մարզիկի օրինակով համառորեն կմարզվենք: Ահա թե ինչու էր հարկավոր առաջին հերթին անքթիթ նայել ճշմարտության աչքերին: Ուրեմն պետք է անվերապահորեն ընդունել, որ քննադատական յուրաքանչյուր հղում արված է լավատեսորեն, պարտադիր դարձած ցանկալի արդյունքի ակնկալիքով:

Մեզանում կա ազնիվ խլրտում: Վերակառուցում է, այն է՝ ժողովրդի բարօրությանը, ճշմարտի հաղթանակին, բարոյական ապրելակերպի հաստատմանը նպատակամղված համաժողովրդական սրբազան պայքար: Երբ գործն ու խոսքը բխում են մեկը մյուսից ու ապավինում իրար, առկա է վերակառուցման կարևոր նախապայմանը, անգունանում է բյուրոկրատիզմը... այս դեպքում կյանքի բոլոր ոլորտների (տնտեսական, սոցիալական, հոգևոր) թերությունները ու բացթողումները օբյեկտիվորեն ու ըստ արժանվույն կգնահատվեն, անձինք և իրերը կկոչվեն իրենց անունով, իսկ առաջատար բնագծերը կնվաճվեն իրական ցուցանիշներով:

---



# ՌԵԳԻՈՆԱԼ ԱԳՐՈԱՐԴԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԼԾԱԿԸ

**Ս. ՍԵԴՐԱԿՅԱՆ**

ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԱԳՐՈԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ բնագավառի գործունեության հանգուցային պրոբլեմներից են նրա բոլոր ոլորտների զարգացման
ինտենսիվացումը և ստեղծված ... ռեսուրսից ստացվող հատույցի զգալի բարձրացու-
մը, որը հնարավորություն կտա լուծելու հաշվեկշռված սննդի պրոբլեմը: Հաշվի առ-
նելով, որ «պարենային հարցը դա գլխավոր հարցն է... մեր քաղաքականությունում»
(Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 36, էջ 613), նրա իրականացման կոնկրետ ուղիների մշակման
անհրաժեշտություն է առաջանում: Այս խնդրի լուծումը պայմանավորված է ինչպես
նյութատեխնիկական, տնտեսական ու սոցիալական գործոնների ամբողջությամբ, այն-
պես էլ զգալի չափով ԱԱՀ-ի բոլոր ոլորտներում աշխատանքային կոլեկտիվների վրա
կուսակցական-քաղաքական ազդեցության, մարդկային գործոնի ակտիվացման աս-
տիճանով:
ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր հասարակական գիտությունների ակադեմիայի կա-
տարած սոցիոլոգիական հետազոտությունները բացահայտեցին մի շարք միութենա-
կան հանրապետությունների և մարզերի ագրոարդյունաբերական համալիրների կու-
սակցական ղեկավարման հարուստ փորձը և միջոցների զինանոցը: Խոսքն ամենից
առաջ վերաբերում է բոլոր մակարդակներով կադրերի հետ կատարվող աշխա-
տանքին: Կադրերի ընտրության ու տեղաբաշխման նկատմամբ սկզբունքային, կու-
սակցական մոտեցման հետ առանձնակի հրատապություն է ստանում այն խնդիրը, որ
յուրաքանչյուր աշխատող իր աշխատատեղում գիտակցի կուսակցության ագրարային
քաղաքականության իրականացմանն ակտիվորեն մասնակցելու անհրաժեշտությունը:
Վերջին հաշվով, «որքան ավելի խորն է այն վերափոխությունը, որ մենք ուզում ենք
կատարել, այնքան ավելի շատ հետաքրքրություն և գիտակցական վերաբերմունք
պետք է առաջ բերել նրա նկատմամբ, նորանոր միլիոնավոր և տասնյակ միլիոնավոր
մարդկանց համոզել նրա անհրաժեշտության մեջ» (ԵԼԺ, հ. 42, էջ 173—174):
Ռեգիոնում պարենային ծրագրի իրականացման կուսակցական ղեկավարման,
ԱԱՀ-ի արդյունավետ գործունեության բարձրացման կուսակցական-քաղաքական ա-
պահովման հետագա ուղիների որոշման հարցերի շուրջ հավաստի ինֆորմացիա
ստանալու համար մենք փորձագետների կարծիքների սոցիոլոգիական ուսումնասի-
րություն ենք կատարել: Հարցվողների ընդհանուր թվի 73,3 տոկոսն ունի բարձրա-
գույն կրթություն, որոնց 66 տոկոսը՝ գյուղատնտեսական, 14,3 տոկոսը՝ բարձրագույն
քաղաքական: Նրանց կարծիքով, առկա են դրական տեղաշարժեր այնպիսի կարևոր
ուղղություններում, ինչպիսիք են տնտեսական հարցերի լուծման նկատմամբ կուսակ-
ցական մոտեցման ապահովումը, կադրերի նկատմամբ պահանջկոտության բարձրա-
ցումը, հանձնարարված գործի հանդեպ պատասխանատվության ուժեղացումը: Սա-
կայն շատ ուղղություններում կուսակցական ու տնտեսական մարմինների գործունե-
ության կատարելագործումը դանդաղ է ընթանում և շոշափելի արդյունք չի տալիս:
Կուսակցական կոմիտեների աշխատանքի վերակառուցումն առավել դժվարու-

ՍԵԴՐԱԿՅԱՆ ՍԵԴՐԱԿ ՄԱՐԳԱՐԻ— ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր հասարակական գիտությունների ակադեմիայի ասպիրանտ:



digitised by A.R.A.R.@

# ԻՆՖՈՐՄԱՑԻԱՆ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅԱՆ ԾԱՌԱՅՈՒԹՅԱՆ ՄԵՋ

**Դ. ՍԱՐԳՍՅԱՆ**

ԵՐԿՐԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄՆ արագացնելու՝ ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած ստրատեգիական կուրսի իրականացման գործում վճռական դեր է պատկանում գիտատեխնիկական առաջադիմությանը (ԳՏԱ)։ ՍՄԿԿ ծրագրում նշվում է. «Սոցիալիզմի պատմական կոչումն է՝ կոմունիստական շինարարությանը ի սպաս դնել առաջավոր գիտության նվաճումները, ամենակատարյալ ու ամենահզոր տեխնիկան, ստեղծարար կոլեկտիվ աշխատանքի հարաճուն ուժը» **(ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 198)։

Համագումարը գիտատեխնիկական առաջադիմության հարցերում գլխավոր կուրսը սահմանել է հետևյալ կերպ. «Գիտատեխնիկական առաջադիմության արագացումը կառավարելու կուսակցության մշակած ստրատեգիան նախ և առաջ այն է, որ, առաջ շարժվելով գիտության և տեխնիկայի լայն ճակատով, առկա միջոցները կենտրոնացվեն հանգուցային ուղղություններում։ Երկրորդ, ասպարեզ տալ հուսալի, պրակտիկայում ստուգված տեխնիկական նորույթների մասսայական օգտագործմանը՝ նպատակ ունենալով առավելագույն հատույց ստանալ, քանի դեռ դրանք բարոյապես չեն հնացել։ Երրորդ, արագորեն ու նպատակասլաց տանել գիտական, նախագծային և կոնստրուկտորական մշակումները, որոնք կապահովեն աշխատանքի արտադրողականությունը բազմապատիկ բարձրացնող սկզբունքորեն նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ստեղծումն ու յուրացումը» (նույն տեղը, էջ 331)։

Ընթացիկ հնգամյակում նախատեսված է հանրային աշխատանքի արտադրողականության աճի առնվազն երկու երրորդը ստանալ գիտության և տեխնիկայի նվաճումների օգտագործման հաշվին՝ հիմնական ուշադրությունը դարձնելով գիտական այն հետազոտություններին ու մշակումներին, որոնք ժողովրդական տնտեսության մեջ կապահովեն առաջանցիկ տեմպ և առավել բարձր տնտեսական հատույց։ Այս պահանջներն ընկած են ՍՍՀՄ գիտատեխնիկական առաջադիմության քսանամյա ժամանակաշրջանի համար նախատեսված կոմպլեքսային ծրագրի հիմքում, որը կոչված է կոորդինացնող դեր խաղալու ժողովրդատնտեսական մյուս ծրագրերի նկատմամբ։

Հատուկ ուշադրություն է նվիրվում այնպիսի առաջնային ուղղությունների, ինչպիսիք են էլեկտրոնիկան, ատոմային էներգետիկան, կոմպլեքսային ավտոմատացումը, նյութերի արտադրության ու մշակման տեխնոլոգիան։

Ելնելով կուսակցության XXVII համագումարի հիմնադրույթներից և ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան որոշումներից՝ վերակառուցում է իրականացվում նաև սովետական գիտության մեջ։ Այդ նպատակով ստեղծվում են գիտատեխնիկական առաջադիմության կազմակերպման նոր ձևեր՝ միջճյուղային գիտատեխնիկական համալիրներ, գիտաարտադրական միավորումներ, ինժեներական կենտրոններ, ժամանակավոր գիտական կոլեկտիվներ։ Միաժամանակ էական նշանակություն են ստանում բուն գիտական գործունեության ինտենսիվացումը, գիտության և արտադրության ինտեգրացման ամրապնդումը։ Գիտության, տեխնիկայի, արտադրության ինտեգրացման կազմակերպական նոր ձևերը պետք է ապահովեն գիտական գաղափարների արագ ներդրումը։ Այդպիսի ձևերից են միջճյուղային գիտատեխնիկական համալիր-

ՍԱՐԳՍՅԱՆ ԴՄԻՏՐԻ ԲԱԳՐԱՏԻ—երկրաբանական-հանքաբանական գիտությունների թեկնածու, ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեի և գիտությունների ակադեմիայի գիտատեխնիկական ինֆորմացիայի համամիութենական ինստիտուտի ավագ գիտաշխատող։



ները, որոնք ստեղծվել են ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման համաձայն՝ 1985 թվականի վերջին։ Ներկայումս երկրում գիտատեխնիկական առաջադիմության ամենակարևոր բնագավառներում գործում են 20-ից ավելի համալիրներ, որոնք զբաղվում են տեխնիկայի, տեխնոլոգիայի և նյութերի սկզբունքորեն նոր տեսակների մշակմամբ ու լայնամասշտաբ արմատավորմամբ։ Միջճյուղային գիտատեխնիկական համալիրների խնդիրն է՝ արագացնել նորագույն հիմնարար գաղափարներից մինչև ժողովրդական տնտեսության մեջ դրանց լայնամասշտաբ արմատավորման ընթացքը։ Համալիրների գործունեության տվյալ փուլում էական նշանակություն է ստանում գիտատեխնիկական ծրագրերի ինֆորմացիոն ուղեկցման միասնական համակարգի ստեղծումը՝ պրոբլեմային-կողմնորոշված ինֆորմացիոն համակարգերի հիման վրա։

Գիտության արդիական կազմակերպման օրինակ է «Ժամանակ» կոլեկտիվը,
որը ստեղծվել է ՍՍՀՄ գիտության և տեխնիկայի պետական կոմիտեի ու ՍՍՀՄ գի-
տությունների ակադեմիայի համատեղ որոշմամբ՝ ավտոմատացված արտադրական
համալիրների կազմակերպման նպատակով միջճյուղային բնույթի գիտատեխնիկա-
կան հեռանկարային պրոբլեմի լուծման համար։ Ժամանակավոր գիտական այդ կո-
լեկտիվի հիմնական խնդիրն է՝ ստեղծել և արտադրության մեջ յուրացնել սկզբուն-
քորեն նոր, համաշխարհային մակարդակը գերազանցող ավտոմատացված տեխնոլո-
գիական համալիրներ, որոնք օգտագործում են ժողովրդատնտեսական կարևոր նշա-
նակություն ունեցող գյուտերն ու տեխնիկական նոր լուծումները։ Կոլեկտիվի աշխա-
տանքի հիմքում ընկած է գիտատեխնիկական գործունեության կազմակերպման ծրա-
գրային-նպատակային ձևը։

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը «Ժամանակ» կոլեկտիվի համար վե-
րադաս մարմին է։ Նա է իրականացնում ժամանակավոր այդ կոլեկտիվի աշխատան-
քին մասնակցող բոլոր կազմակերպությունների գործունեության կոորդինացումը։

Գիտատեխնիկական առաջադիմության ինֆորմացիոն ապահովման կատարելա-
գործումը բխում է կուսակցության տնտեսական ստրատեգիայի իրագործման, արտա-
դրության ինտենսիվացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման
արագացման պահանջից։ Այս խնդրի հաջող ու արդյունավետ լուծումը հնարավոր է
գիտատեխնիկական ինֆորմացիայի պետական համակարգի հետագա զարգացման,
ժամանակակից ինֆորմացիոն ինդուստրիայի ու բանկերի ստեղծման և ինտեգրաց-
ման բազայի վրա։

Ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական առաջադիմության նվա-
ճումների արմատավորման հիմքում ընկած է համակարգային, կոմպլեքսային մոտե-
ցումը։ ԳՏԱ-ի հիմնական ուղղություններն են առաջադիմական կառուցվածքային
տեղաշարժերի իրականացումը, նոր տեխնիկայի և նյութերի տեխնոլոգիայի, կազ-
մակերպման ու կառավարման մեթոդների արմատավորումը։

Գիտության և տեխնիկայի զարգացման պլանավորման նկատմամբ համակար-
գային մոտեցման հիման վրա է իրականացվելու գիտատեխնիկական առաջադիմու-
թյան 1991—2010 թվականների կոմպլեքսային ծրագրի մշակումը։ Տվյալ ծրագիրը
ժողովրդական տնտեսության պլանավորման միասնական համակարգի բաղկացուցիչ
մասն է, որը հնարավորություն է տալիս որոշելու գիտության և տեխնիկայի զար-
գացման առաջնային ուղղությունները տասնամյա, հնգամյա և տարեկան պլանավոր-
ման շրջանակներում։

Հանրահայտ է, որ ինչքան ավելի արագ է տեղի ունենում կապիտալի շրջանա-
ռությունը նյութական արտադրության բնագավառում, այնքան ավելի շատ շահույթ է
բերում այդ կապիտալը։ Համանման դրություն գոյություն ունի նաև գիտության մեջ,
որտեղ «շրջանառու կապիտալի» դերը կատարում է գիտատեխնիկական ինֆորմա-
ցիան։ Ահա թե ինչու ՍՄԿԿ XXVII համագումարում ընդգծվեց գիտաինֆորմացիոն
գործունեությունը կատարելագործելու և նրա արդյունավետությունը բարձրացնելու ան-
հրաժեշտությունը։ Ընդ որում գիտաինֆորմացիոն գործունեության բարելավման գլ-
խավոր եղանակներից մեկը մասնագիտացումն է, որի դերը առանձնապես աճել է
էլեկտրոնային հաշվիչ մեքենաների և ինֆորմացիոն տեխնիկայի ու կապի այլ նորա-
գույն միջոցների, միկրոֆիլմավորման և օպերատիվ պոլիգրաֆիայի մեթոդների ա-
վելի ու ավելի լայն օգտագործման կապակցությամբ։

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը խնդիր են դրել ստեղծել ին-
ֆորմացիայի վերամշակման նոր ինդուստրիա, քանի որ նոր ինֆորմացիոն տեխնո-
լոգիան նպաստում է հանրային արտադրության արդյունավետության շեշտակի աճին։



digitised by A.R.A.R.@

ԳՏԱ-ի ինֆորմացիոն ապահովման հիմքում ընկած է մի համակարգ, որը, լինելով կազմակերպական, տեխնիկական, լեզվական, ալգորիթմական միջոցների, տեխնոլոգիական պրոցեսների ամբողջություն, կատարում է գիտատեխնիկական ինֆորմացիայի հավաքման, կուտակման, պահպանման, մշակման ու հաղորդման ֆունկցիաներ: Ժամանակին ներկայացված հավաստի ու որակյալ ինֆորմացիան արագացնում է գիտատեխնիկական առաջադիմությունը: Դրան նպաստում են մասնագիտացված պրոբլեմային-կողմնորոշված ինֆորմացիոն-որոնողական համակարգերը, ինֆորմացիոն մարմինների ռեգիոնալ-ճյուղային կոոպերացման զանազան ձևերը, կոլեկտիվ օգտագործման հաշվողական կենտրոնները, որոնք ունեն տվյալների կոոպերացված բազաներ:

Հայտնի է, որ ներկայումս մարդկության գիտական գիտելիքների ծավալը կրկնապատկվում է յուրաքանչյուր տասը տարին մեկ: Ամեն տարի հրապարակվում են մոտ հինգ միլիոն գիտական հոդված, հարյուր հազարավոր մենագրություններ, բրոշյուրներ, տեսություններ և այլն: Գիտատեխնիկական ինֆորմացիայի պետական համակարգի տեղեկատու-ինֆորմացիոն ֆոնդի ծավալը կազմում է մոտ 2 միլիարդ փաստաթուղթ: Այդ կապակցությամբ կարևոր նշանակություն են ստանում ԳՏԱ-ի կառավարման պրոբլեմը, գիտական հետազոտությունների և մշակումների ուղղությունների ընտրությունը, ֆինանսավորման ծավալը, գիտահետազոտական փորձարարական-կոնստրուկտորական աշխատանքների արդյունքների արմատավորման տեմպերը, հիմնարար և կիրառական հետազոտությունների միջև ճիշտ հարաբերակցության որոշումը և այլն: Այս ամենն անհրաժեշտություն է առաջացնում մշակել և արմատավորել ինֆորմացիոն համակարգերի զանազան տեսակներ, որոնցում կենտրոնանում է ինչպես երկարաժամկետ, այնպես էլ օպերատիվ գիտատեխնիկական ինֆորմացիան:

Քանի որ նոր ինֆորմացիոն տեխնոլոգիայի արմատավորման հիմքում ընկած է տարբեր կարգերի կոմպյուտերների օգտագործումը, ապա ներկայումս նկատվում է ծրագրային ապահովման արտադրության բուռն զարգացում, որի դերը անընդհատ աճում է տեխնիկական միջոցների արժեքին համապատասխան: Ի դեպ, ժամանակակից ինֆորմացիոն տեխնոլոգիայի կիրառումը, հատկապես անհատական էլեկտրոնային հաշվիչ մեքենաների օգտագործումը՝ ինֆորմացիոն ռեսուրսների ուղղակի մատչելիությամբ, մարդուն ազատում է դրա հավաքման, պահպանման և մշակման բազմաթիվ հնացած գործողություններ կատարելուց, կրճատում գիտահետազոտական-փորձարարական-կոնստրուկտորական աշխատանքների ժամկետներն ու բարձրացնում դրանց որակը, ավելացնում աշխատանքի արտադրողականությունը և այլն:

Այսպիսով, ինֆորմացիոն-հաշվողական ենթակառուցվածքի ստեղծումը բարձրացնում է արտադրության ավտոմատացման մակարդակը, բարդացնում դրա կառուցվածքը, մեծացնում նոր առաջադիմական տեխնոլոգիաների արմատավորման մասշտաբները՝ դրանով իսկ նպաստելով գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը:

Արդի փուլում հանրային արտադրության ինտենսիվացումն ավելի ու ավելի է հիմնվում գիտության և տեխնիկայի նվաճումների զանգվածային օգտագործման վրա, ուստի գիտատեխնիկական նվաճումներին, առաջավոր արտադրական փորձին գիտնականների, ինժեներատեխնիկական աշխատողների և բանվորների իրազեկ լինելը էական նշանակություն է ստանում: Ընդ որում գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում շարունակ կրճատվում են գիտական գաղափարի ծագման ու դրա իրագործման միջև ընկած ժամկետները: Այդ կապակցությամբ գիտատեխնիկական ինֆորմացիայի (ԳՏԻ) ծառայությունների գործունեության գլխավոր ուղղություններից մեկն է դառնում գիտահետազոտական փորձարարական կոնստրուկտորական աշխատանքների ինֆորմացիոն ապահովման համակարգերի ստեղծումն ու արմատավորումը: Սա կարևորվում է այն իրողությամբ, որ ներկայումս նորագույն գիտատեխնիկական նվաճումների մասին ինֆորմացիան համաչափելի է հիմնական տնտեսական ռեսուրսների՝ նյութերի, էներգիայի, տեխնոլոգիայի և այլնի հետ, այսինքն՝ շեշտակիորեն բարձրանում է ինֆորմացիոն ռեսուրսի տնտեսական դերը:

Գիտատեխնիկական համալիրների և պրոբլեմային-կողմնորոշված ինժեներական կենտրոնների ստեղծումն ու հաջող գործունեությունը թույլ են տալիս հիմնարար և տեսական հետազոտությունների հիման վրա լայնորեն զարգացնել կիրառական մշակումները, արագ ավարտել և ակտիվորեն արմատավորել դրանց արդյունքները նոր տեխնիկայի ու նոր տեխնոլոգիաների ձևով: Վերջինս տալիս է զգալի տեխնիկա-



տնտեսական արդյունք և նպաստում արտադրության տեխնիկական մակարդակի աճին, բարձրացնում գիտատեխնիկական առաջադիմության ինֆորմացիոն ռեսուրսների օգտագործման արդյունավետությունը:

ԳՏԻ-ի նշանակությունը և նրա ազդեցությունը երկրի էկոնոմիկայի առաջադիմության վրա հսկայական են: Այն նպաստում է տարբեր ասպարեզներում առկա նվաճումների, պրակտիկայում առաջավոր փորձի լայն արմատավորմանը, որն էլ, իր հերթին, ԳՏԱ-ի արագացման, աշխատանքի արտադրողականության աճի, թողարկվող արտադրանքի որակի բարձրացման ու նրա ինքնարժեքի իջեցման հիմքն է: Ասենք, որ ավտոմատացված ինֆորմացիոն կենտրոնների և տվյալների բաշխիչ բանկերի ստեղծումը թույլ կտա տասներկուերորդ հնգամյակում շեշտակիորեն բարձրացնել ԳՏԱ-ի ինֆորմացիոն ապահովումը: Դա կհանգեցնի ԳՏԻ-ի մարմինների գործունեության ձեռքբերումներից ժողովրդատնտեսական արդյունքի բարձրացմանը, գիտատեխնիկական ծրագրերի վերաբերյալ կառավարչական որոշումների արդյունավետության ու որակի աճին: Մյուս կողմից, նոր ցանցային ինֆորմացիոն տեխնոլոգիայի և գիտատեխնիկական ծրագրերի ինֆորմացիոն ապահովման սարքավորումների յուրացումը ԳՏԻ-ի հանրապետական ինստիտուտներում բարձրացնում է ամբողջ գիտաինֆորմացիոն գործունեության արդյունավետությունը:

Ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական ինֆորմացիայի օգտագործման արդյունավետությունը, ԳՏԱ-ի արագացման վրա նրա ազդեցությունը մեծապես կախված են այն սպառողներին հասցնելու ժամկետների կրճատումից, ինֆորմացիոն սպասարկման ցանցային տեխնոլոգիայի արմատավորումից, դրա ապահովման լիակատարության ու նպատակամղվածության բարձրացումից, ինչպես նաև ԳՏԻ-ի պետական համակարգի բոլոր օղակների փոխգործողության ուժեղացումից:

Մեր օրերում կարևոր նշանակություն են ստանում ավտոմատացված ինֆորմացիոն կենտրոնների ցանցի հետագա զարգացումը (որը ներկայումս ընդգրկում է ԳՏԻ-ի 37 համամիութենական, ճյուղային և հանրապետական մարմիններ), ինֆորմացիայի մշակման ու ներկայացման ժամկետների շեշտակի կրճատումը՝ լրիվ ավտոմատացման միջոցով: Այս գործում պակաս կարևորություն չունեն ընդհանուր միութենական, հանրապետական, ռեգիոնալ, ճյուղային և միջճյուղային գիտատեխնիկական ծրագրերի առաջնահերթ ինֆորմացիոն ապահովումն ու ուղեկցումը, մասսայական ինֆորմացիայի միջոցներով գիտության և տեխնիկայի նվաճումների պրոպագանդման ուժեղացումը և այլն:

Երկրի էկոնոմիկան զարգացման ինտենսիվ ուղու վրա փոխադրելու պայմաններում ԳՏԻ-ի մարմինների ու ծառայությունների առջև խնդիր է դրվում՝ բարձրացնել գիտահետազոտական, փորձարարական կոնստրուկտորական աշխատանքների, ԳՏԱ-ի կառավարման ինֆորմացիոն ապահովման մակարդակը: Պահանջվում է նաև ավելի ինտենսիվորեն ու արդյունավետորեն օգտագործել ԳՏԻ-ի պետական համակարգում կուտակված ինֆորմացիոն ռեսուրսը:

Քանի որ ինֆորմացիոն ռեսուրսը ԳՏԱ-ի արագացման հիմնական գործոններից մեկն է, ապա կարևոր նշանակություն է ստանում նրա կառավարումը՝ ինֆորմացիայի մշակման ու հաղորդման միջոցների զարգացման, տվյալների, գիտելիքների բանկերի ստեղծման ու օգտագործման, ինֆորմացիայի միջազգային և ռեգիոնալ փոխանակման է՛լ ավելի ընդլայնման միջոցով: Այդ խնդրի լուծումը ենթադրում է թե՛ երկրի ինֆորմացիոն կենտրոնների հագեցվածության արմատական բարելավում հաշվողական տեխնիկայի ժամանակակից միջոցներով, թե՛ ԳՏԻ-ի ավտոմատացված համակարգերի ու ծառայությունների կադրային ապահովման բարելավում:

Կուսակցության XXVII համագումարում Մ. Ս. Գորբաչովն ասաց, որ ստրատեգիական ուղղությունների գծով մշակված են խոշոր կոմպլեքսային ծրագրեր և սկսվել է դրանց իրագործումը: Նա ընդգծեց նաև, որ անհրաժեշտ է անցնել բարձրագույն կազմակերպվածություն և արդյունավետություն ունեցող էկոնոմիկայի, տասներկուերորդ հնգամյակում ժողովրդական տնտեսությունը վերազինել գերազանցապես այնպիսի հայտնագործությունների ու գյուտերի հիման վրա, որոնք իսկական հեղափոխական փոփոխություններ ապահովեն տեխնիկայի և տեխնոլոգիայի բնագավառում: Հենց այս ամենն էլ պահանջում է սկզբունքորեն նոր մոտեցում ցուցաբերել ԳՏԱ-ի ինֆորմացիոն ապահովմանը: Տարակույս չկա, որ ընդհանուր միութենական, հանրապետական և ռեգիոնալ նպատակային կոմպլեքսային ծրագրերի ու կարևորագույն գիտատեխնիկական պրոբլեմների լուծման ինֆորմացիոն ապահովման ամբողջ համակարգի հետագա կատարելագործումը կնպաստի ԳՏԱ-ի արագացմանը:



digitised by A.R.A.R.@

Գիտատեխնիկական առաջադիմության արագացման գործում կոչված է էական ավանդ ներդնել 1986—1990 թթ. ընդհանուր միութենական գիտատեխնիկական ծրագիրը՝ ԳՏԻ-ի պետական ավտոմատացված համակարգի առաջին հերթի ստեղծման ուղղությամբ:

Գիտատեխնիկական ինֆորմացիայի պետական ավտոմատացված համակարգի առաջին հերթի կենտրոն-մասնակիցներ են ինֆորմացիայի 8 համամիութենական, 13 ճյուղային և 16 ռեգիոնալ մարմիններ, այդ թվում և գիտատեխնիկական ինֆորմացիայի հայկական գիտահետազոտական ինստիտուտը:

Անդրկովկասի հանրապետությունների ձեռնարկությունների և կազմակերպությունների ինֆորմացիոն ապահովման համար տարվող աշխատանքները ինտեգրացնելու նպատակով ստեղծվել է երեք հանրապետությունների ԳՏԻ-ի համակարգերի ռեգիոնալ միավորում: Դրա հիմնական նպատակներն են՝ կազմակերպել Անդրկովկասի հանրապետությունների ԳՏԻ-ի համակարգերի փոխգործողությունը, ապահովել ժողովրդական տնտեսության զանազան ճյուղերի մասնագետների ինֆորմացիոն պահանջմունքների որակական ու օպերատիվ բավարարումը, բարձրացնել գիտական հետազոտությունների արդյունավետությունը ԳՏԻ-ի ավտոմատացված համակարգերի մշակման ու կատարելագործման բնագավառում: Միավորման գլխամասային մարմինն է ԳՏԻ-ի հայկական գիտահետազոտական ինստիտուտը, որը օպերատիվ ղեկավարություն է իրականացնում նրա գործունեության բոլոր փուլերում:

Գիտական կազմակերպությունների աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու և ժողովրդական տնտեսության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների օգտագործումն արագացնելու նպատակով գիտատեխնիկական ինֆորմացիայի հայկական գիտահետազոտական ինստիտուտում ստեղծվել է արմատավորման ծառայություն: Նրանում ընդգրկված են շարժուն ստեղծագործական խմբեր որոշակի խնդիրների լուծման համար: Աշխատանքները կատարվում են հանրապետության միավորումների, ձեռնարկությունների գիտահետազոտական և նախագծային-կոնստրուկտորական կազմակերպությունների հետ կնքված պայմանագրերի հիման վրա: Ծառայության հիմնական խնդիրն է հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ արմատավորել հեռանկարային, հիմնականում միջճյուղային գիտատեխնիկական նվաճումները՝ տեխնոլոգիական փաստաթղթերը մշակելու և գաղափարը մինչև արդյունաբերական նմուշի ու սերիական արտադրության փուլի հասցնելու հիման վրա: Ծառայության շրջանակներում ստեղծվել են պատրաստի մշակումների բանկեր: Ընդ որում գիտատեխնիկական ինֆորմացիայի հայկական գիտահետազոտական ինստիտուտի նորամուծությունների մշակման ու արմատավորման աշխատանքները կատարվում են ավելի արագ ու ավելի էժան, քան ճյուղային ինստիտուտներում և կոնստրուկտորական բյուրոներում: Միաժամանակ բարձրանում են արտադրանքի որակը և աշխատանքի արտադրողականությունը: Ինստիտուտում շարունակվում են արմատավորման գործունեությունը կազմակերպելու արդյունավետ համակարգի ու մեթոդների որոնումները:

Գիտատեխնիկական ինֆորմացիայի հայկական գիտահետազոտական ինստիտուտի արմատավորման ծառայության աշխատանքի նկատմամբ մեծ հետաքրքրություն են ցուցաբերում մյուս միութենական հանրապետությունների համանման ինստիտուտները: 1987—1988 թթ. կնքվել է 13 տնտեսական պայմանագիր՝ 360 հազար ռուբլի ընդհանուր նախահաշվային արժեքով:

Երկրի ժողովրդական տնտեսության զարգացման ինտենսիվացման՝ կուսակցության նախանշած կուրսի իրականացման շահերը պահանջում են շեշտակիորեն բարձրացնել գիտատեխնիկական առաջադիմության ինֆորմացիոն ապահովման համակարգի, գիտաինֆորմացիոն ամբողջ գործունեության արդյունավետությունը, հասնել այն բանին, որ գիտական ինֆորմացիան ավելի մեծ հատույցով ծառայի տնտեսական խնդիրների լուծմանը:

---



# ԱՐՎԵՍՏՆ Է ՆԵՐԿԱՅԱՑՆՈՒՄ ԺԱՄԱՆԱԿԸ

**Կուսակցությունը իր կուլտուրական քաղաքականության գլխավոր խնդիրը տեսնում է նրանում, նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, որ ամենալայն ասպարեզ բացի մարդկանց ընդունակությունների դրսևորման համար, նրանց կյանքը դարձնի հոգեպես ավելի հարուստ, բազմազան: Այսօր ժողովրդի կուլտուրական մակարդակի աճի համեմատ ուժեղանում է արվեստի, այդ թվում նաև կերպարվեստի ազդեցությունը հասարակության կյանքի, նրա բարոյահոգեբանական կլիմայի վրա: Հենց այս հանգամանքն էլ բարձրացնում է կուլտուրայի վարպետների պատասխանատվությունը իրենց ստեղծագործությունների գաղափարական ուղղվածության, մարդկանց մեջ գեղագիտական բարձր ճաշակ ձևավորելու հարցում: Այս և մի շարք այլ խնդիրների շուրջ զրուցեցին ՍՍՀՄ գեղարվեստի ակադեմիայի իսկական անդամ, ՍՍՀՄ ժողովրդական նկարիչ ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԸ և մեր թղթակից ՀԱՍՄԻԿ ԱՆՏՈՆՅԱՆԸ:**

ԹՂԹԱԿԻՑ— Երկրում իրականացվող վերափոխումներն ընդգրկել են հասարակական կյանքի և մարդու գործունեության բոլոր կողմերը՝ քաղաքական, տնտեսական, սոցիալական, բարոյահոգեբանական ոլորտները: Այս ամենը, անշուշտ, արտացոլվում է նաև ժողովրդի հոգևոր կյանքում: Արվեստը միշտ էլ ընթացել է առաջադիմական պրոցեսների ավանգարդում և իրեն հատուկ միջոցներով արտահայտել կյանքը՝ որպես բարդ ու բազմապիսի մի ֆենոմեն: Ինչպիսի՞ն պետք է լինեն ժամանակակից արվեստագետի, մասնավորապես գեղանկարչի, դիրքորոշումը, տեղն ու դերը սովետական հասարակության այս հիրավի հեղափոխական վերակառուցման պրոցեսում:

ԽԱՆՋՅԱՆ.— Երբ հետադարձ հայացք ենք նետում մարդկության պատմության այս կամ այն ժամանակաշրջանի վրա, ապա միշտ էլ նրա տարեգրության ամենատեսանելի, ամենաշոշափելի էջերը փնտրում ենք արվեստի, մշակույթի մեջ: Դա է պատճառը, որ զանազան ժամանակահատվածների անդրադառնալիս, ամենից առաջ խոսում ենք դրանց թողած հոգևոր գանձերի մասին, ուր ամփոփված է տվյալ ժամանակի և՛ գաղափարական, և՛ գեղագիտական հավատամքը, որը ձևավորվում է հասարակական, սոցիալական, տնտեսական, քաղաքական որոշակի պայմաններում: Ես կարծում եմ, որ այդ առումով մեր ժամանակը, մեր դարն էլ բացառություն չեն: Այսօր մենք բացեիբաց ասում ենք՝ մեր երկրում սոցիալիզմի կառուցման 70 տարիների ընթացքում բավականին խոշոր սխալներ ենք թույլ տվել: Այդ սխալները լրիվ տեսանելի են նաև մեր արվեստում, մեր մշակույթի մեջ: Երևի այլ կերպ էլ չէր կարող լինել. ապրել ենք անհատի պաշտամունքի ժամանակաշրջան, և մեր արվեստը տուրք է տվել դրան: Մենք ծառայել ենք զանազան սխալ սկզբունքների, և արվեստը գնացել է դրանց հետևից, քանի որ փորձել է լինել ստիպողաբար կամ հոժարակամ արձագանքն այն իրողությունների, այն խմորումների, որոնք տեղի էին ունենում մեր կյանքում, հասարակության մեջ:

Այսպիսին էր մեր ժամանակը: Սակայն մեզանում կային նաև ստեղծագործողներ, որոնք գտան ուրիշ, մարդկային, անկեղծ մի ճանապարհ, որն, իրենց վնաս չհասցնելուց զատ, օգուտ բերեց բոլոր նրանց, ովքեր այդ տարիներին ազնվորեն ծառայում էին հասարակությանը և ուզում էին ճիշտ ապրել:

Ես կարող եմ մեր կերպարվեստի մեջ թվարկել մի շարք անուններ (մյուս ոլորտների մեջ չխորանալով), որոնք այսօր առիթ չպիտի ունենային վերաշինելու, վերանայելու իրենց արվեստը: Մեր Սարյանը, Կոջոյանը, ռուսական կերպարվեստում՝ Պլաստովը, Դեյնեկան, Կորինը և ուրիշներ: Ես խոսում եմ այն արվեստագետների մասին, որոնք գործում էին սովետական շրջանում և տվյալ դեպքում չեմ անդրադառնում նրանց, ովքեր ժամանակին փորձեցին խիզախ խոսքեր ասել և ենթարկվե-



digitised by A.R.A.R.@

դիրներին, որոնք մեր առջև դրվել են: Դա, դժբախտաբար, մեզ շատ վնաս բերեց. մեզ չթողեցին, որ ունենանք մեր սեփական դատելակերպը, սեփական մոտեցումը գործի հանդեպ:

Այսօր կարող եմ ասել, որ տեղի ունեցած բոլոր ստեղծագործական կոլեկտիվների համագումարներից առավել լավ ընդունեցի կինեմատոգրաֆիստների համաժողովը՝ այնտեղ շոշափված խնդիրների, ձևի և արծարծված գաղափարների առումով: Նրանք առաջինները փորձեցին սկսել կառուցվածքային, կազմակերպական փոփոխություններից, իսկ յուրաքանչյուր նոր գաղափար պահանջում է նոր կազմակերպական մոտեցում, այսինքն այն, ինչ արվեստի վերաբերմամբ նշում ենք «յուրաքանչյուր գաղափար ինքն է ծնում իր ձևը»: Մյուս ստեղծագործական միությունների համագումարներում, այդ թվում և մեր նկարիչների հավաքում չնայած խոսվեց նոր գաղափարների հաստատման մասին, բայց, ցավոք, կազմակերպական, կառուցվածքային ձևը մնաց նույնը: Իսկ ես կարծում եմ, որ երբ ձևը մնում է անփոփոխ, ինչ տիպի նոր բովանդակություն էլ մենք նրա վրա փաթաթենք, այն, անշուշտ, կստիպի հնատճ մնալու:

ԹՂԹԱԿԻՑ.— Մի խոսքով, վերափոխումը արմատականորեն չի կատարվի...

ԽԱՆՋՅԱՆ.— ... Մինչդեռ, մեր առջև դրված խնդիրները պահանջում են հենց արմատական վերակառուցում:

Հիմա, իհարկե, դժվար է ասել, թե ինչի կհասնեն կինեմատոգրաֆիստները: Չէ՞ որ յուրաքանչյուր նոր ձև, նոր գաղափար ինչ-որ չափով նաև էքսպերիմենտ է, այն կարող է ունենալ ցայտուն էֆեկտներ, արդյունքներ, որ ոգևորում են մարդկանց: Կարող են լինել նաև ձախողումներ, թերություններ, որոնք հարկավոր է անմիջապես շտկել: Այս ամենը պետք է լինի, որովհետև, երբ ունես նպատակ ու ճանապարհ, ապա այդ ճանապարհին հնարավոր են և շատ անակնկալներ: Մենք էլ զերծ չենք այդ խոչընդոտներից: Այսօրվա հրապարակայնության պայմանները մեզ հնարավորություն են տալիս այդ ամենը գիտենալու և իմաստավորելու: Այս առումով, օրինակ, կասեի, որ կինեմատոգրաֆիայում, ինչպես նաև կերպարվեստում, հիվանդագին նատուրալիստական կամ նատուրալիզմին հարող նոտաները շատացել են: Իսկ սա մի միտում է, որ բոլոր ժամանակներում արվեստում բարձր չի համարվել, և այսօր էլ, անշուշտ, բարձր լինել չի կարող: Իհարկե, հիմա ջարդվում են այն բոլոր քարացած շրջանակները, որոնց մեջ տարիներ շարունակ աշխատում, ստեղծագործում էինք: Այժմ արդեն շրջանակներ չկան, բայց կա ընկալումների մի այնպիսի լայն տարածություն, որի մեջ մենք հաճախ կորցնում ենք շատ կարևոր բան՝ մերը, ազգայինը, մեր հոգու ու խղճի դարավոր էությունը, այսինքն այն, ինչ բնորոշում է տվյալ արվեստի ավանդը համաշխարհային գանձարանում:

ԹՂԹԱԿԻՑ.— Այլ կերպ ասած ստեղծվում է միապաղաղ մի պատկեր, ուր դժվար է տարբերակել, թե ո՞րն է ռուսականը, ո՞րն է ֆրանսիականը և ո՞րը՝ հայկականը: Ըստ երևույթին, հենց այստեղ էլ պետք է շատ զգույշ լինել, որպեսզի ազատությունն ընկալվի, մանավանդ երիտասարդ արվեստագետների կողմից, իր իսկական արժեքով, որպեսզի այն հնարավորություն տա յուրաքանչյուր ստեղծագործողի՝ իր ազգային էությունը, նաև ազգի ամենալուսավոր, ամենաառաջավոր գաղափարները արտահայտելու:

ԽԱՆՋՅԱՆ.— Հաճախ ցուցասրահներում լինելով՝ գործեր եմ տեսնում, որոնք, կարծես, արդեն ծանոթ են, կարծես դրանց ինչ-որ տեղ հանդիպել եմ՝ լինի Թբիլիսիում, Մոսկվայում, միութենական ցուցահանդեսներում, թե արտասահմանյան որևէ սրահում: Դա ինձ, որպես նկարչի, որպես քաղաքացու տխրեցնում է, քանի որ վկայությունն է լայն տարածում ստացած միտումի. արվեստն՝ առհասարակ, նկարչությունն՝ առհասարակ և ոչ թե արդիական ստեղծագործությունն իր ուրույն ազգային հենքով ու առանձնահատկությամբ:

ԹՂԹԱԿԻՑ.— Նկարիչների համամիութենական հավաքները ընդհանրապես աչքի էին ընկնում խոր մասնագիտական, տեսական հարցերի արծարծմամբ, քննարկմամբ: Եվ այս անգամ էլ անկեղծ խոսակցություն տեղի ունեցավ ռեալիստական արվեստի խնդիրների վերաբերյալ: Այս հարցն, անշուշտ, հասունացել էր, քանի որ ռեալիստական արվեստի նեղ, սահմանափակ մեկնաբանությունը, նրան պարտադրվող, սակայն ոչ բնորոշ հանձնարարականները խոչընդոտում էին իրականում լայն, անսպառ հնարավորությունները: «Արվեստի մայրուղին մնում է ճշմարտությունը»,— ահա այսպիսի բառեր հնչեցին համագումարի ամբիոնից: Ռեալիզմը, ինչպես կյանքն ու մտածողությունը, հարուստ է ու բազմակողմանի և, որպես կյանքի



ու մտածողության արտահայտչամիջոց, չի կարող ազատ զարգանալ հարկադրանքի, թելադրանքի ներքո:

ԽԱՆՋՅԱՆ.— Ռեալիստական արվեստը միակ ուղին է, որ բնորոշում է ճըշմարտացի մոտեցումը կյանքին, մարդուն: Աշխարհի լավագույն մտածողները միշտ էլ գտել են, որ ռեալիզմը եղել է և կլինի արվեստի ամենաճշգրիտ և կենսունակ ուղղությունը՝ մարդն իր ֆիզիկական և հոգևոր էությամբ վերացական չէ, ավելին՝ կյանքը բնորոշված է հազար ու մի, սակայն կոնկրետ պայմաններով՝ պատմական, հասարակական, սոցիալական, տնտեսական, գաղափարական, կենցաղային: Մարդու երազանքներն ու թռթռվանքներն անգամ վերջին հաշվով խարսխվում են ինչ-որ կոնկրետության վրա: Եվ գուցե հենց այստեղ էլ թաքնված է մտքիս հետևյալ հենքը՝ արվեստի և, մասնավորապես, կերպարվեստի ցանկացած ուղղությունների, «իզմերի» մեջ սուտը կարելի է ծածկել գեղեցիկ ֆակտուրայով, գույնով, տրամադրությամբ, հյուսվածքով: Բայց ռեալիզմի մեջ սուտը չի ծածկվում, երևում է: Արվեստի ուրիշ ոչ մի ուղղություն մարդու համար այնքան հասկանալի ու ազդեցիկ չէ, որքան ռեալիզմը:

ԹՂԹԱԿԻՑ.— Իսկ այսօր մենք խոսում ենք ռեալիզմի սահմաններն ընդլայնելու, հնարավորությունները հարստացնելու մասին...

ԽԱՆՋՅԱՆ.— ... Բայց ռեալիզմի հասկացության ընկալման շրջանակները երբեք էլ նեղ չեն եղել: Այլ բան, որ որոշակի պայմաններում այն իսկապես դրվել է նեղ կաղապարի մեջ և ստացել իրեն ոչ հատուկ կյանքի պոզիտիվ կողմերը փառաբանելու «պատկեր»: Հիմա մեզ տրված է ժամանակը լայնորեն ընկալելու և այն ճշգրտորեն՝ իր իսկ նեգատիվ ու պոզի...իվ կողմերով վերարտադրելու ազատություն:

ԹՂԹԱԿԻՑ.— Այսինքն, առկա է ոչ թե ռեալիզմի սահմանները ընդլայնելու, այլ նրա բուն իմաստը վերականգնելու միտումը: Այս պրոցեսն, անշուշտ, արտացոլվեց նաև «Սովետների երկիր» համամիութենական ցուցահանդեսում, որին իրենց գործերով մասնակցեցին երկրի ազգային գեղարվեստի տարբեր դպրոցների ներկայացուցիչները:

ԽԱՆՋՅԱՆ.— Արդեն շուրջ 40 տարի է, ինչ ինքս էլ մասնակցում եմ զանազան հանրապետական և միութենական ցուցահանդեսների: Պետք է անկեղծ լինեմ և ասեմ, որ այս վերջին ցուցահանդեսն ինձ ինչ-որ տեղ հիասթափեցրեց: Եթե դուք հիշում եք, նախորդ ցուցահանդեսներում մենք ունեինք մեր բաժինները...

ԹՂԹԱԿԻՑ.— Խոսքը ազգային, հանրապետական բաժինների՞ մասին է...

ԽԱՆՋՅԱՆ.— Այո՛: Եվ այստեղ յուրաքանչյուր ազգային արվեստ ցցուն կերպով էր ներկայացվում համամիութենական հանդիսատեսին՝ լինի դա գույնով, ոճով, գաղափարով, թե կատարումով (որքան էլ որ տարբեր ենք մեր հանրապետության ներսում, այնուամենայնիվ, դրսում իրար նման ենք՝ դա մեր հոգին ու էությունն է, հայկականությունը, ազգային ավանդները): Եղավ մի ժամանակ, երբ խոսվեց այն բանի մասին, որ հարկավոր չէ այլևս ընդգծել ազգայինը, որ մենք մի ժողովուրդ ենք, մի երկիր և այլն, և այլն: Դա սխալ դրվածք էր, և այդ սխալը ոչ քիչ չափով գրգռեց ու խորացրեց ազգայնական տրամադրությունները: Կարծում եմ, որ միայն բուն ազգային էության մեջ յուրաքանչյուրս կարող ենք ավելի հումանիստ, ավելի ինտերնացիոնալիստ լինել, հասկանալ և հարգել ուրիշներին, փորձել նրանցից սովորել: Այսինքն՝ ազգայինը զարգացնելով միայն կարելի է հասնել ազգամիջյան փոխ-
ըմբռնման, տարբեր ազգային մշակույթների փոխհարստացման: Այս իմաստով
վերջին ցուցահանդեսը թույլ էր, դժվարությամբ էի կարողանում զանազանել ազգա-
յին դպրոցները միմյանցից. նույնատիպ մոտեցումները շատ էին, նմանատիպ նկար-
ները՝ նույնպես: Եվ դրանք բերել էին հիմնականում արդիական արվեստի այն ներ-
կայացուցիչները, ովքեր «ազատություն», «բազմազանություն» գաղափարի տակ կա-
տարում են ֆորմալ, ձևական գործեր: Կարծում եմ, որ սա լուրջ խնդիր է, որի մա-
սին պետք է մտածեն ստեղծագործական կոլեկտիվներում. երիտասարդ ստեղծա-
գործողներին լայն հնարավորություններ, ազատություն տալով՝ միաժամանակ նրանց
մղել խորացնելու իրենց պոտենցիալ հնարավորությունները, բնական օժտվածությու-
նը, որոշ չափով՝ նաև թոթափելու այն մոդային շերտավորումները, որոնք, գուցե,
անխուսափելի են, սակայն չպետք է խոչընդոտեն իսկական ազգային արվեստ
ստեղծելու գործին:

ԹՂԹԱԿԻՑ.— Մենք անդրադարձանք մի բավականաչափ լուրջ հարցի. այն է՝ ցուցահանդեսների, դրանց նոր ձևերի և կազմակերպման նոր մեթոդների ընտրության, արվեստագետների և քննադատների ստեղծագործական որոնումների ակտի-



digitised by A.R.A.R.@

վացմանը: Գաղտնիք չէ, որ այսօր մեր ցուցահանդեսների ոչ քիչ մասը, մեղմ ասած,
մարդաշատ չէ: Գաղափարաքաղաքական և հոգևոր դաստիարակության այդպիսի
մի արդյունավետ միջոց փաստորեն, ինչպես հարկն է, չի գործում: Հայտնի է նաև, որ
մեր ցուցահանդեսներում հաճախ տեղ են գտնում գորշ, անարտահայտիչ գործեր, որ
հանձնաժողովները ինչ-ինչ պատճառներով նախապատվություն են տալիս «դեկա-
վար» վրձնին: Իհարկե, այս ոլորտում էլ հասունացել է լուրջ վերափոխումների ան-
հրաժեշտությունը՝ գուցե կառուցվածքային առումով:

ԽԱՆՋՅԱՆ.— Դժվար է ասել, թե տվյալ դեպքում ինչպիսին պիտի լինի այդ
կառուցվածքային վերափոխումը, սակայն ակնհայտ է մի բան. առայժմ գոյություն
ունեցող բաժանմունքները (կերպարվեստ, գրաֆիկա, քանդակ, կիրառական արվեստ)
կարծես, առանձնապես արդյունավետ չեն՝ համենայնդեպս ցուցահանդեսային գոր-
ծում: Ընդգրկված լինելով ըստ ժանրերի, մենք, այդուհանդերձ, ներկայացնում ենք
տարբեր ուղղություններ: Լավ է, եթե մենք հավասարապես ցուցադրվենք, այնինքն
կարողանանք ընտրել մեր համախոհներին և արդեն տվյալ ուղղության շրջանակնե-
րում որոշել մեր տեղն ու դերը: Կարելի էր նաև արդեն խմբերում կամ ընկերություն-
ներում լավագույններին որոշելուց հետո կազմակերպել մի այլ ցուցահանդես, ուր
ներկայացված լինեին տարբեր ուղղությունների առավելագույնս հաջողված գործերը:
Այս առումով անդրադառնանք մի խնդրի, որ հույժ կարևորություն ունի արծարծվող
հարցի պարզաբանման համար: Ահավասիկ, ինձ վտանգավոր է թվում այն հանգա-
մանքը, որ մեր արվեստի հիմնական գնորդն ու պատվիրատուն մնում է կուլտուրայի
մինիստրությունը: Դա իր հետ բերելու է թելադրանք՝ թե՛ թեմատիկ, թե՛ գաղափարա-
խոսական, թե՛ մինչև իսկ անվանումների: Սա, անշուշտ, ինչ-որ ձևով պետք է հաղ-
թահարվի: Գների հարցում էլ գոյություն ունի համահավասարման միտում: Այստեղ
հարկավոր է հատկապես տարբերակված մոտեցում, մանավանդ որ ՍՄԿԿ Կենտրո-
նական կոմիտեի և Մինիստրների խորհրդի կողմից ընդունված «Կերպարվեստի հե-
տագա զարգացման և աշխատավորների կոմունիստական դաստիարակության գոր-
ծում նրա դերի բարձրացման միջոցառումների մասին» որոշման մեջ նախատեսվում
է մեկուկես-երկու անգամ մեծացնել ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրության և ՍՍՀՄ
նկարիչների միության ծախսերը գեղարվեստական ստեղծագործությունների պատ-
վիրման ու գնման, ինչպես նաև ցուցահանդեսների կազմակերպման համար: Ար-
վեստն ապրում է հոգու, սրտի, խղճի և պարտքի թելադրանքով: Իսկ մինչև վերջերս
մեր ցուցահանդեսները պատվերային բնույթ էին կրում: Մեզանում առկա է նաև մեկ
ուրիշ միտում՝ դա ցուցահանդեսների մեծությունն է: Հաճախ սրահներում զետեղ-
վում են 2—3 հազար գործեր: Ո՞վ կարող է հիշել, իմաստավորել, առավել ևս հուզ-
վել այսչափ շատ կտավների ու քանդակների առկայության պայմաններում: Մնում
է, որ այցելուները հպանցիկ ծանոթանան այդ ստեղծագործություններին՝ հնարավո-
րություն չունենալով նրանցից որևէ մեկի մոտ կանգ առնելու, մտորելու, խորհելու:

ԹՂԹԱԿԻՑ.— Իսկապես, խոշոր ցուցահանդեսները ամենևին չեն նպաստում
հաղորդակցվելու արվեստի հետ, կրելու նրա ազդեցությունը: Ահա այստեղ է, որ
կորչում է նրա հիմնարար ուժը՝ մարդուն ձևավորելու, կազմավորելու, նրա մտավոր
ու հոգևոր աշխարհի վրա ներգործելու ունակությունը:

ԽԱՆՋՅԱՆ.— Պետք է կազմակերպել փոքրիկ, իմաստավորված, նպատակային
ցուցահանդեսներ, որոնք ունենան իրենց որոշակի հասցեատերերը, ինչպես նաև
հնարավորություն ստեղծել մեզ մոտ ներկայացնելու ոչ միայն երկրի տարբեր հան-
րապետությունների ու մարզերի, այլև աշխարհի շատ ու շատ երկրների արվեստը:
Ահա մի հարց ևս, որ քննարկվեց մեր համագումարում: Այստեղ խոսվեց այն մասին,
որ հարկավոր է ընդլայնել տարբեր երկրների արվեստագետների փոխադարձ կա-
պերը, մեր արվեստագետներին ներկայացնել արտասահմանում: Այսօր սովետական
կերպարվեստը և, մասնավորապես, արդիական արվեստը, ես դա կարող եմ հաս-
տատորեն ասել նաև իմ անձնական տպավորություններից ելնելով, շատ բանում ա-
վելի բարձր է, քան այն, որին մենք արգելված պտուղ համարելով՝ փորձում ենք
հաղորդակցվել: Մեր արվեստն իսկապես խորն ու մարդասիրական է, և նրա հենքն
են կազմում, առանց գեղեցիկ խոսքեր ասելու, իսկապես հումանիստական գաղա-
փարները:

ԹՂԹԱԿԻՑ.— Ուրեմն, մենք առավել ևս պիտի աշխատենք այդ արվեստը ի
սպաս դնելու մեր ժողովրդի թե՛ հոգևոր, թե՛ ամենօրյա այլևայլ խնդիրների լուծմա-
նը: Ներկայումս դժվար է պատկերացնել որևէ ձեռնարկության լիարժեք աշխատանքն
առանց նկարչի, դիզայների: Նրանց մասնագիտական ծառայության անհրաժեշտու-



թյունը զգում ենք ամենուրեք, առավել ևս մեր ընդհանուր տանը՝ մայրաքաղաքում:
Դեռևս քիչ են մեզանում հուշարձաններն ու քանդակագործական կոմպոզիցիաները,
որոնք ներդաշնակորեն կլրացնեին շրջակա բնապատկերը: Չեն գործադրվում նկա-
րիչների գեղարվեստական ունակությունները նաև նոր թաղամասեր կառուցելիս, որի
պատճառով դրանք անհրապույր տեսք ունեն: Ցուցափեղկերը, որ ստեղծագործական
փորձերի համար մի լայն տարածք են, նմանվել են պահեստային նկուղների: Տակա-
վին չեն ակտիվացել հայկական ժողովրդական արհեստների ներկայացուցիչները:

ԽԱՆՋՅԱՆ.— Ինչ վերաբերում է դիզայնին՝ արդյունաբերական էսթետիկային,
այստեղ իսկապես անելիքներ ունենք: Եվ արժեքավորելով գեղարվեստի հնարավո-
րությունները՝ կարող ենք ասել, որ այն անցած տարիների ընթացքում պատշաճ մա-
կարդակով չի զարգացել՝ համենայն դեպս լայն կիրառական առումով: Սրա հիմնական
պատճառներից մեկը, ըստ երևույթին, պետք է համարել տնտեսավարման ոչ ար-
դյունավետ ձևերի առկայությունը, մրցակցության գործոնի բացարձակ անտեսումը,
քանի որ դիզայնը վերջին հաշվով հենց նրա ծնունդն է: Այստեղից էլ արտադրող-
ների աննշահագրգիռ մոտեցումը այս հարցին՝ տուփո՞վ թե առանց դրա, գեղեցիկ
ձևավորումո՞վ թե ընդհանրապես տձև, ապրանքը գնվում է: Հիմա, կարծում եմ, ար-
դյունաբերական էսթետիկան մեզանում վերելք կունենա, կստանա լայն տարածում,
քանի որ մեր տնտեսավարման մեջ կատարվող վերափոխումներից ծնունդ են առ-
նում շատ լավ, ժամանակակից միտումներ:

Նույնը և մեր ցուցափեղկերի ձևավորմանն է վերաբերում: Մեր միօրինակ խա-
նութներն իրենց միօրինակ ապրանքներով, միօրինակ ճարտարապետական լուծու-
մով՝ առանձնապես լայն հնարավորություններ չեն կարող ստեղծել արդյունաբերա-
կան էսթետիկայի նվաճումներն օգտագործելու համար: Տարիներ առաջ Երևանի
խանութների ցուցափեղկերը ձևավորեցին Մոսկվայի մասնագետները, և դա լավ ար-
դյունք տվեց: Սակայն ներկա պայմաններում, երբ մեզ մոտ ցուցափեղկերի ձևավո-
րումը հազվադեպ է փոփոխվում (արտասահմանյան երկրներում ականատես եմ ե-
ղել, թե ինչպես պարտադիր շաբաթը մեկ կատարվում էին փոքր փոփոխություններ,
իսկ ամեն եռամսյակ՝ հիմնովին), դրանց գործադրումը որպես արվեստի մի տեսակի
կիրառում մեր ամենօրյա կյանքում փաստորեն անհնարին է: Մեր շահագրգռված
կազմակերպություններն էլ պետք է լրջորեն մտահոգվեն իրենց շահույթներից հա-
տուկ գումար տրամադրելու այս խնդրի լուծմանը: Բացի այդ, շենքերի տիպային
նախագծերը հնարավորություն չեն ընձեռում նոր կամ ավելի հետաքրքիր տարբե-
րակներ փնտրելու: Ցուցափեղկեր այսօր չկան, դրանք վեր են ածվել մեծ պատու-
հանների, որոնց միակ ֆունկցիան լույսի ներթափանցումն է:

Այսօր Երևանում կա դիզայնի կիրառման մի լավ օրինակ՝ խոսքս Թումանյան
փողոցի վրա գտնվող «Գեղարվեստի սրահի» մասին է, որ կատարված է բավակա-
նին բարձր մակարդակով՝ թե՛ նյութի, թե՛ կատարողական, թե՛ վաճառքի հանված
իրերի առումով: Բայց լավ կլիներ, անշուշտ, ստեղծեինք նաև ավելի փոքր խանութ-
ներ, ուր վաճառքի հանվեին զուտ ազգային, հայկական ոճով ստեղծված մեր ժողո-
վրդական արհեստների վարպետների գործերը:

Այժմ մասնակցում եմ Երևանի հին թաղամասերից մեկի՝ Չորագյուղի վերա-
կանգնման աշխատանքներին, ուր որոշել ենք ամեն մի առանձնատան ներքնահար-
կում բացել մի խանութ և դրանք ձևավորել ըստ տեսակների՝ փայտագործի, ասեղ-
նագործի, դարբնի…

Ինչ վերաբերում է ճարտարապետական լուծումների տիպայնությանը, միապա-
ղաղությանը՝ դա մեր ժամանակի ցավոտ խնդիրներից մեկն է: Կար ժամանակ, երբ
երազում էինք և իրավունք ունեինք երազելու, որ Երևանն իր ազգային, հայկական
դեմքով կդառնա գեղեցկագույն քաղաքներից մեկը: Ցավոք սրտի, Թամանյանից
հետո եկան նոր հոսանքներ, նոր որոշումներ, այդ թվում նաև ֆինանսավորման հետ
կապված, երբ շինությունների ճարտարապետական առանձնահատկությունը ավելոր-
դություն համարվեց… Սկսեցինք լայն ծավալով «տուփեր» կառուցել (դա էլ մարդ-
կային էր, օրվա խնդրից էր ելնում), որ ժողովուրդն անվանեց «ննջարանային թա-
ղամասեր»: Ճարտարապետների մի մասն էլ այդ պայմաններում բռնեց մի այլ ուղի,
տարվեց ժամանակակից ձևերով՝ օգտագործելով ապակին ու ալյումինը, որոնք բնո-
րոշ չէին մեր պայմաններին: Եվ ունեցանք մի տխուր ճարտարապետություն՝ գորշ
շքամուտքերով, գորշ ճակատներով:

Հիմա, իհարկե, ցանկություն կա վերադառնալ ազգային ճարտարապետական
ավանդներին, և դա իսկապես բարեփոխում է: Սակայն, կարծում եմ, որ այսօրվա



digitised by A.R.A.R.@

խնդիրներից ելնելով, երբ նախատեսվում է մոտ ապագայում ամեն մի ընտանիքի ապահովել առանձին բնակարանով, այս հարցն առայժմ լուծում չի ստանա:

Մեզանում առկա է նաև ծայրահեղությունների մեջ ընկնելու միտումը՝ մեկ որոշվեց քանդել բոլոր հնությունները, մեկ էլ՝ ձեռք չտալ և ոչ մի քարի: Ներկա պայմաններում, երբ Երևանի կենտրոնն անավարտ է, երբ այն այժմ դեռ չի ձևավորված վերջնականորեն, դժվար է խոսել մեր հուշարձանների տեղադրման, միջավայրի հետ ներդաշնակության մասին: Ես կարծում եմ, պիտի վերանայել մեր մրցույթների կարգը, որը կատարյալ չէ: Այստեղ պետք է գտնել նոր ձևեր, նոր միջոցներ, հրաժարվել քմահաճ ցանկություններից, թելադրանքից: Հարկավոր է կոլեգիալ մոտեցում, բանիմաց, մասնագիտական լուծում՝ հաշվի առնելով, իհարկե, հասարակական կարծիքը: Սրանք շաղկապված խնդիրներ են: Կարծում եմ, որ դրանք կլուծվեն արվեստագետների, ճարտարապետների, քանդակագործների միասնական աշխատանքով:

ԹՂԹԱԿԻՑ.— Նկարիչների միությունը, ինչպես և ամեն մի ստեղծագործական կոլեկտիվ, համագործակցողների, մասնագետների մի միասնություն է, որը կոչված է զարգացնելու յուրաքանչյուր անհատականության պոտենցիալը: Իսկ դրան կարելի է հասնել ստեղծագործական կազմակերպությունների լայն դեմոկրատացման պայմաններում:

ԽԱՆՋՅԱՆ.— Մենք այսօր ապրում ենք հրապարակայնության, դեմոկրատիայի պայմաններում, որոնք այնքա՜ն անհրաժեշտ են մեր հասարակության կյանքի հեղափոխական վերակառուցման, ստեղծագործական բեղմնավոր մթնոլորտ հաստատելու համար:

Բայց վերակառուցման երեք տարիները ցույց տվեցին, որ մեր ընտրած ճանապարհը շատ դժվարին է:

Վերը նշեցինք, որ իրական կյանքն է արվեստին սնուցողը և նրա յուրաքանչյուր թռիչքը կամ անկումը որոշակի հետք է թողնում ստեղծագործությունների վրա: Ի դեպ, մենք արդեն ականատես ենք լինում անցյալին բնորոշ բազմաթիվ նեգատիվ երևույթների, որոնք այսօր էլ խիստ կենսունակ են, և երբ այստեղ կամ այնտեղ ծագում է անհատի պաշտամունքի ու լճացման տարիներից ժառանգված և լուծում պահանջող որևէ պրոբլեմ, ապա անմիջապես փորձում են հին մեթոդներով շրջանցել այն, գործի դնելով, իհարկե, վաղուց մերժված պիտակներն ու որակումները:

Լրիվ և նույնիսկ ոչ լրիվ ճշմարիտը պահանջում է անասելի ջանքեր դեպի մամուլը, ռադիոն ու հեռուստատեսությունը ուղի հարթելու համար:

Ո՛չ, նման գործելակերպը հեռու չի տանի ո՛չ մեզ, ո՛չ մեր երկիրը և ոչ էլ նրա արվեստը: Թե՛ կյանքում, թե՛ արվեստում մարդու ազատության և արժանապատվության հենքը պիտի լինեն լրիվ ու կատարյալ ճշմարտությունը և ազատությունը:

Համոզված եմ, որ մեր երկիրը և նրա ժողովուրդները այլ ճանապարհ չունեն:

---

# ԱԴՈ ԳՐԻԳՈՐԻ ԱԴՈՅԱՆ



Կյանքի 83-րդ տարում վախճանվեց ճանաչված հասարակական գործիչ, հրապարակախոս և հասարակագետ, 1927 թվականից ՍՄԿԿ անդամ, միութենական նշանակության անհատական կենսաթոշակառու Ադո Գրիգորի Ադոյանը:

Ա. Ադոյանը ծնվել է 1905 թվականին՝ Վանում: Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին գաղթել է Կովկաս և ապաստան գտել մանկատներում: Արդեն 1922 թվականին պարբերական մամուլում Ադոյանի առաջին հոդվածները վկայում էին լրագրողի նրա ակնհայտ ձիրքի մասին: 1929 թվականին Ա. Ադոյանն ավարտում է Անդրկովկասյան կոմունիստական համալսարանը և 1930 թ. նշանակվում է կուսակցության Զանգեզուրի օկրուգային կոմիտեի բաժնի վարիչ: Այնուհետև նա աշխատանքի է անցնում ՀԿԿ Կենտկոմում՝ նախ որպես կուլտուրայի ու պրոպագանդայի բաժնի վարիչի տեղակալ, ապա՝ բաժնի վարիչ: Միաժամանակ դասավանդում է Երևանի պետական և կոմունիստական համալսարաններում: 1934 թվականին նշանակվում է «Խորհրդային Հայաստան» թերթի խմբագիր: 1935—1936 թթ. նա սովորել է Մոսկվայի համաշխարհային տնտեսության և համաշխարհային քաղաքականության կարմիր պրոֆեսուրայի ինստիտուտում:

Անհատի պաշտամունքի տարիներին Ա. Ադոյանը ենթարկվել է ռեպրեսիաների:

1955 թ. Ա. Ադոյանն աշխատանքի է անցնում մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական մասնաճյուղում որպես ավագ գիտաշխատող:

Ադոյանի գործունեության մեջ նոր փուլ է նշանավորվում 1956 թվականից, երբ նա հաստատվում է ՀԿԿ Կենտկոմի «Լենինյան ուղիով» տեսական-քաղաքական ամսագրի գլխավոր խմբագիր: Այստեղ առավել ակնհայտորեն դրսևորվեցին նրա՝ որպես խմբագրի, պրոֆեսիոնալ հրապարակախոսի ու կուսակցական աշխատողի ունակությունները: Նրա ղեկավարությամբ «Լենինյան ուղիով» ամսագիրը գտավ իր դեմքը, դարձավ հանրապետության կուսակցական կազմակերպության մարտական ամբիոնը: Ա. Ադոյանի հրապարակումներն աչքի են ընկնում կուսակցականությամբ, սուր դիտողականությամբ, նյութի խորիմացությամբ, ինքնատիպ գրելաոճով: Նրա գրչին են պատկանում գիտական և ընթերցող շրջաններին լայնորեն հայտնի այնպիսի աշխատություններ, ինչպիսիք են «Լենինը՝ ժուռնալիստ», «Ֆոյերբախի կյանքըն ու աշխարհայացքը», «Սիրո և ընտանիքի էվոլյուցիան» և այլն:

Իր հասարակական, գիտական ու հրապարակախոսական ողջ գործունեության ընթացքում Ա. Ադոյանը միշտ եղել է կուսակցության գաղափարախոսական աշխատանքի առաջավոր գծում: Նա ակտիվորեն նպաստել է մարքս-լենինյան տեսության պրոպագանդմանը, որոշակի հետք թողել սովետահայ հասարակական մտքի պատմության մեջ:

Ա. Ադոյանը քանիցս ընտրվել է ՀԿԿ Կենտկոմի կազմում, եղել է ՀՍՍՀ մի շարք գումարման Գերագույն սովետի դեպուտատ: Նա արժանացել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանի և կառավարական այլ պարգևների: 1985 թ. ապրիլից Ա. Ադոյանը միութենական նշանակության կենսաթոշակառու էր:

Ադո Գրիգորի Ադոյանի՝ հավատարիմ կոմունիստ-լենինյանի, տաղանդավոր ժուռնալիստի, անաղարտ նկարագրի տեր մարդու պայծառ հիշատակը միշտ վառ կմնա մեր սրտերում:

**Ս. Գ. Հարությունյան, Հ. Մ. Ոսկանյան, Ֆ. Տ. Սարգսյան, Յու. Պ. Կոչետկով, Ռ. Ա. Արզումանյան, Լ. Գ. Սահակյան, Հ. Հ. Հակոբյան, Ս. Ս. Ավետիսյան, Գ. Ե. Ասատրյան, Ա. Ս. Սիմոնյան, Է. Ա. Մանուկյան, Բ. Մ. Մկրտչյան, Ջ. Կ. Կուրբանով, Մ. Ա. Մատոյան, Հ. Ռ. Սիմոնյան, Խ. Հ. Հովակիմյան, Կ. Ս. Վարդանյան**

digitised by A.R.A.R.@

# ԽՈՍՔ ԵՐԱԽՏԱԳԻՏՈՒԹՅԱՆ

Մեր շարքերից ընդմիշտ հեռացավ Ադո Գրիգորի Ադոյանը՝ հավատարիմ լենինյանը, բոլշևիկ հրապարակախոսը: Նրա բովանդակալից, մաքառումներով լի կյանքը նոր ապրելակերպի հաստատման վկայություններից է, որին անմնացորդ նվիրաբերեց իր ողջ էությունը, ձիրքն ու տաղանդը: Ադոյանը այն սերնդի ներկայացուցիչն էր, որին բախտ վիճակվեց դառնալու նոր աշխարհի կառուցողը և այդ ճանապարհին ճաշակելու և՛ հաղթանակների բերկրանքը, և՛ դառը փորձությունները:

Դժվար է հավատալ, որ մեզ հետ չէ Ադո Գրիգորիչը՝ խելոք ու գիտակ ժուռնալիստը, գիտնականն ու հրապարակախոսը: Նրա իմացության շրջանակը, հիրավի, անընդգրկելի էր, քանզի աշխատասիրությամբ ու ինքնակատարելագործմամբ նա ձեռք էր բերել հանրագիտարանային գիտելիքներ՝ դառնալով ժամանակի ամենակիրթ, բարձր բարոյականությամբ օժտված մտավորականներից մեկը: Ադոյանն իր մեջ մարմնավորում էր մարդկային ամենաառաքինի արժեքները. սակավապետ էր, համեստ ու անանձնական, նրա նպատակն ու իմաստը կոմունիստական իդեալների կենսագործումն էր, ամբողջական ու ներդաշնակ անհատի բարոյագեղագիտական խառնվածքի փիլիսոփայական իմաստավորումը:

Անհատի պաշտամունքի տարիներին Ադոյանը նույնպես ենթարկվեց ռեպրեսիաների, ընդհատվեց նրա հասարակական ու ստեղծագործական բեղուն գործունեությունը: Թվում է՝ ստեղծված իրավիճակում նա պետք է կորցներ հավատը մարդու, ազատության նկատմամբ: Բայց ողջախոհությունն ու առողջ կենսափիլիսոփայությունը հուշում էին, որ այդ անարդարություններին վերջ կդրվի, որ կհաղթանակի ճշմարտությունը:

Ադոյան-լենինյանի համար իսկական քննություն էր դաժան տարիներից հետո տեսական-քաղաքական ամսագիրը գլխավորելը, ընդ որում ամենաբարձր ու խստապահանջ չափանիշներով:

Մենք՝ նրա կրտսեր գրչակիցներս, շատ բան ենք սովորել մեր ուսուցչից ու խորհրդատուից: Իր աշխատասիրությամբ ու պահանջկոտությամբ նա համակում էր մեզ, քաջալերում, առանց խրատաբանության հասկացնում, որ ժուռնալիստիկան բարդ ու դժվարին բնագավառ է, և դրան կարող են նվիրվել միայն իրենց եսի նկատմամբ խստապահանջ, կոմունիստական իդեալներից չշեղվող, մշտապես ինքնակատարելագործվող մարդիկ:

Ադոյանը իսկական կոմունիստ էր, նա կուսակցության ու ժողովրդի հոգսերը իրենն էր համարում, ուրախանում երկրի, հանրապետության, ժողովրդի հաջողություններով: Խորապես ուսանելի էին նրա կյանքն ու գործելակերպը:

Հրաժեշտ տալով մեր ավագ ընկերոջը, մենք կջանանք բարձր պահել այն ամսագրի պատիվն ու հեղինակությունը, որին նա նվիրաբերեց իր ուժերն ու եռանդը:

**«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ**

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս. (գլխավոր խմբագիր), ԱՍԱՏՐՅԱՆ Գ. Ե., ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ Լ. Բ. (գլխավոր խմբագրի տեղակալ), ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Լ. Մ., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ. (պատասխանատու քարտուղար), ՀՈՎՍԵՓՅԱՆ Ս. Գ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԱՆԴԱԼՅԱՆ Ք. Լ., ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Մ. Դ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԻՄՈՆՅԱՆ Ս. Ա., ՓԱՆԱՐՋՅԱՆ Վ. Բ.

*Հանձնված է շարվածքի՝ 18. 05. 88 թ.: Ստորագրված է տպագրության՝ 23. 06. 88 թ.: ՎՖ 03971: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 16332: Պատվեր՝ 1021:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան-23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:*

digitised by